ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 5
ՄԱՅԻՍ
1960 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

## СОДЕРЖАНИЕ







# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Յոթնամյակի երկրորդ գարունը նոր երջանկություն, նոր խնդություն բերեց մեր ժողովրդին։ Որպես իրենց ստեղծած բարիքների տերն ու տնօրենը, սովետական մարդիկ խիզախորեն կերտում են իրենց կյանքը և ողջ աշխարհին ցուցադրում սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները։*

*Վերջերս ավարտվեց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան, որն օրենքներ ընդունեց՝ բանվորներից ու ծառայողներից գանձվող հարկերը վերացնելու, ինչպես և բոլոր բանվորներին ու ծառայողներին աշխատանքային կրճատ օրվա փոխադրելու մասին։*

*Գերագույն Սովետի կողմից ընդունված օրենքները արտացոլում են սովետական ժողովրդի բարեկեցության անընդհատ աճման նկատմամբ մեր պարտիայի և կառավարության հոգատարությունը, մի անգամ ևս համոզիչ կերպով հաստատելով Սովետական սոցիալիստական պետության քաղաքականության խաղաղասեր բնույթը։*

*Յոթնամյակի պլանների կենսագործման ընթացքում սոցիալիստական ձեռնարկությունների կուտակումներն անշեղորեն աճում են և դառնում ընդլայնված սոցիալիստական վերարտադրության ու ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացման միակ աղբյուրը։ Այս պայմաններում բնակչությունից հարկեր գանձելու անհրաժեշտությունը վերանում է։ Բանվորների ու ծառայողների աշխատավարձից գանձվող հարկերի վերացումը և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման այլ միջոցառումները քաղաքական և տնտեսական խոշոր նշանակություն կունենան, սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունների նոր, փայլուն դրսևորումը կհանդիսանան։*

*Էկոնոմիկայի ծաղկումը ժողովրդի կենսամակարդակի անշեղ աճի հիմքն է։ Սոցիալիստական հասարակարգի հզորությունն ամենից առաջ արտահայտվում է ոչ միայն արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացմամբ, այլև աշխատանքի արտադրողականության վերելքով և այդ հիման վրա ամբողջ հասարակության, նրա անդամների նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարմամբ։*

*Սոցիալիզմի մեծագույն նվաճումն այն է, որ ոչնչացնելով կապիտալիստական արտադրական հարաբերությունները, լայն պայմաններ ստեղծեց հասարակության արտադրողական ուժերի զարգացման համար։ Մեր երկրի աշխատավորները կենսական շահագրգռվածություն են ցուցաբերում հասարակական արտադրության անընդհատ աճի, գիտության ու տեխնիկայի զարգացման գործում։ Դա էլ ամենից առաջ պայմանավորեց սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման մեծ հաջողությունները, որոնք ձգողական օրինակ են մյուս երկրների ժողովուրդների համար։*

Միմիայն սոցիալիզմի օրոք կարող էին ստեղծվել այն անհրաժեշտ պայմանները, որոնք հնարավորություն տվին ձեռք բերելու գիտության ու տեխնիկայի չտեսնված նվաճումներ։ «Այժմ մեր երկիրը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— աշխարհի տնտեսապես ամենաուժեղ տերություններից մեկն է, մարդկության առաջադիմության ջահը, իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդների հուսալի դաշնակիցն ու բարեկամը, խաղաղության և ժողովուրդների եղբայրության պատվարը»։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անշեղորեն ընթանում է իր ընտրած ուղիով, լենինյան ուղիով դեպի կոմունիզմ։ Ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի կենսագործման համար մղվող պայքարում սովետական ժողովուրդը բազմապատկում է իր ստեղծագործական ուժն ու կարողությունները, նորանոր հերոսական գործերով նշանավորում իր հաղթական առաջընթացը։

Անցած 1959 թվականը արտադրողական ուժերի զարգացման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման առումով խոշորագույն հաջողությունների տարի էր։ Արդյունաբերության բնագավառում յոթնամյակի առաջին տարվա արդյունքները զգալիորեն գերակատարվել են։

Ընթացիկ տարվա առաջին չորս ամսվա աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ յոթնամյակի երկրորդ տարվա պլանը ևս հաջողությամբ կատարվում է։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման առաջադրանքն առաջին եռամսյակում կատարվեց 104 տոկոսով։ Գերակատարվեցին չուգունի, պողպատի ձուլման, գլանվածքի արտադրության, նավթի հանույթի, էլեկտրաէներգիայի, բամբակյա և բրդյա գործվածքների, մսի, յուղի, կաթնամթերքների արտադրության առաջադրանքները։ Գերակատարվեց անասունների և կաթի պետական գնումների պլանը։

Սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ցույց են տալիս, ինչպես նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ խաղաղ մրցության մեջ հաղթանակն անպայման կլինի մեր կողմը՝ սոցիալիզմի կողմը։ Այդ են ապացուցում սոցիալիստական շինարարության ամբողջ փորձը, նրա էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերը։

Ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ նյութական արտադրության աճը հանգեցնում է գլխավորապես շահագործողների հարստացմանը, մեր երկրում այն ծառայում է սովետական ժողովրդի կենսապայմանների մշտական բարելավմանը։ Սովետական երկրի աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացումը պայմանավորված է առաջին հերթին ազգային եկամտի աճող տեմպերով։

1959 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, Սովետական Միության ազգային եկամուտը ավելացավ 1,8 անգամ, իսկ 1913 թվականի համեմատությամբ՝ գրեթե 25 անգամ։

Կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում են կապիտալիստները, իսկ աշխատավորներին հասնում է դեռ կեսից էլ քիչ, իսկ ազգային հարստությունը կուտակվում է բուրժուազիայի ձեռքում։ Սովետական Միությունում ազգային եկամտի երեք քառորդը ծախսվում է բնակչության նյութական ու կուլտուրական անձնական պահանջմունքների



բավարարման, իսկ մնացած մասը՝ սոցիալիստական արտադրության ընդլայնման և հանրային այլ կարիքների համար։

Ազգային եկամտի անշեղ աճման շնորհիվ Սովետական Միության բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, պետության հաշվին կատարվող վճարումներով և արտոնություններով հանդերձ, 1959 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ երկու անգամ, կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ 2,2 անգամ։

Սովետական ժողովրդի կենսամակարդակի բարելավմանը մեծ չափով կնպաստի աշխատանքային օրվա տևողության կրճատումը, որի ուղղությամբ արդեն շատ բան է արված։ Գերագույն Սովետի ընդունած օրենքը նախատեսում է մինչև 1962 թվականի վերջերը բանվորներին և ծառայողներին փոխադրել 40-ժամյա աշխատանքային շաբաթվա, իսկ 1964 թվականից՝ վեցժամյա և հինգժամյա աշխատանքային օրվա։ Դա կլինի ամենակարճ աշխատանքային օրն աշխարհում։

Աշխատանքային օրվա տևողության կրճատման ուղղությամբ միջոցառումները իրագործվում են առանց աշխատավարձի պակասեցման, իսկ արդյունաբերական ճյուղերի մեծ մասում և առհասարակ ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձը զգալիորեն բարձրանում է։

Վերջին տարիներին զգալիորեն բարելավվեց թոշակավորման գործը, որը նշանակալի չափով նպաստեց աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը։ Մեծ հոգատարություն է ցուցաբերվում աշխատավորների բնակարանային պայմանների բարելավման նկատմամբ։

Այս ամենը համոզիչ կերպով վկայում են, որ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը գործնական խոշոր քայլեր են արել և անում են սովետական ժողովրդի կյանքն ավելի բարեկեցիկ դարձնելու համար։ Այս կապակցությամբ կարևոր միջոցառում է բնակչությունից գանձվող հարկերի վերացումը։ Կապիտալիզմի պայմաններում բնավ հնարավոր չէ իրագործել նման միջոցառում։ Չէ՞ որ հարկերն ըստ էության, ինչպես նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, կազմում են կապիտալիստական պետության բյուջեի հիմնական աղբյուրը, նրա բոլոր ֆունկցիաների իրականացման հիմնական ֆինանսական բազան։

Ամերիկայի Միացյալ Նահանգների բյուջեում վերջին 20 տարում հարկային մուտքերն աճել են ութ անգամ, Անգլիայի բյուջեում՝ 5,5 անգամ։ Ուղղակի և անուղղակի հարկերի գանձման պատճառով կապիտալիստական երկրներում աշխատավորների եկամուտները պակասում են 20—30 տոկոսով։

Այլ է պատկերը ՍՍՌՄ-ում և մյուս սոցիալիստական երկրներում։

ՍՍՌՄ պետական բյուջեն տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության բյուջե է։ Նրա ճնշող մասը, բոլոր ծախսերի համարյա չորս հինգերորդականը, օգտագործվում է ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Բյուջեի մի մասը ծախսվում է մեր երկրի խաղաղ աշխատանքն ապահովելու և անվտանգությունը պաշտպանող զինված ուժերի պահպանման համար։ Սակայն այդ ծախսերը կրճատվում են մեր զինված ուժերի կրճատման հետ միասին, իսկ կապիտալի երկրներում աճում են ռազմական ծախսերը։

Յոթնամյակի ընթացքում Սովետական Միության էկոնոմիկայի բուռն վե-

*բելքի շնորհիվ կաճի նրա պետական բյուջեն, կավելանան սոցիալիստական տնտեսությունից ստացվող մուտքերը: Ներկայումս Սովետական Միությունն անհրաժեշտ ռեսուրս ունի, որպեսզի սկսի իրագործել բանվորների և ծառայողների աշխատավարձից գանձվող հարկերի վերացման օրենքը: Բնակչությունից գանձվող հարկերի լրիվ վերացումը կիրագործվի էտապներով. այն սկսվելու է այս տարի և ավարտվելու է 1965 թվականին: Ընդ որում որոշված է հարկերի վերացումն սկսել առաջին հերթին համեմատաբար պակաս վաստակ ունեցող բանվորներից ու ծառայողներից, իսկ ապա աստիճանաբար դադարեցնել հարկերի գանձումը բոլոր բանվորներից ու ծառայողներից: Հարկերի լրիվ վերացման շնորհիվ բանվորների և ծառայողների եկամուտները մինչև 1965 թվականը տարեկան կաճեն մոտավորապես 74 միլիարդ ռուբլով:*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վարում են ցածր և բարձր դրույքներ ունեցող բանվորների և ծառայողների աշխատավարձի միջև եղած խզումը վերացնելու քաղաքականություն: Այդ միջոցառումը կնպաստի բոլոր խավերի կենսամակարդակի բարձրացմանը: Ժողովրդի բարօրությանը զգալի չափով կնպաստի նաև գների մասշտաբի փոփոխման և այժմ շրջանառության մեջ գտնվող դրամները նոր դրամներով փոխարինելը:*

*Գերագույն Սովետի սեսիան մեծ ուշադրություն հատկացրեց թեթև և սննդի արդյունաբերության հետագա զարգացմանը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ամեն կերպ ընդլայնելու հարցերին: Մինչև յոթնամյակի վերջը Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող ժողովրդական սպառման կարևորագույն շատ ապրանքների սպառմամբ՝ կանցնի Արևմտյան Եվրոպայի առավել զարգացած կապիտալիստական երկրներից, իսկ յոթնամյակից հետո՝ առաջիկա հինգ տարվա ընթացքում, նաև Ամերիկայի Միացյալ Նահանգներից:*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի որոշումները մի անգամ ևս ապացուցում են, որ ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության գլխավոր օրենքն է: Կոմունիստական շինարարության խոշորագույն նվաճումները, աշխարհում ժողովրդի ամենաբարձր կենսամակարդակ ստեղծելու պրակտիկ միջոցառումները այն զորեղ գործոններն են, որոնք արագորեն հարթում են սոցիալիզմի վեհ գաղափարների ուղին ամբողջ աշխարհում: Առաջավոր մարդկությունը չի կարող չտեսնել ու չհամոզվել, որ միայն խաղաղասիրական քաղաքականություն վարող պետությունը կարող է այդպիսի լուրջ քայլերի դիմել ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու ասպարեզում:*

*Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի որոշումները ավելի թևավորեցին սովետական ստեղծագործ ժողովրդին, նոր ուժ ու կորով հաղորդեցին նրա կուռ բազուկներին: Որքան բարեկեցիկ է դառնում սովետական մարդկանց կյանքը, այնքան ուժգնորեն են ծավալվում նրանց ունակությունները, որոնք ի սպաս են դրվում երկրի էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացմանը:*

*Սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման յուրաքանչյուր աստիճան նրան ավելի է մոտեցնում մարդկության վառ ապագային՝ կոմունիզմին: Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունն ամեն ինչ կանեն ժողովրդի բարօրության անընդհատ աճման համար:*

---

# ՄԵՐ ՓԱՌԱՎՈՐ ՄԱՅԻՍԸ

Մայիսի մեկը աշխատավորների մեծ տոնն է, բոլոր երկրների բանվորների համերաշխության, եղբայրության օրը. որքա՜ն հերոսական էջեր են գրել պրոլետարները իրենց պատմության ընթացքում մայիսյան այս օրերին, հաղթանակի որքա՜ն ուրախ և պարտության որքա՜ն դառն զգացումներ են ապրել նրանք: Բայց բոլոր հանգամանքներում մայիսյան տոնը մի նոր աստիճանի է բարձրացրել խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար աշխատավորների մղած պայքարը, ճանապարհ է հարթել բանվոր դասակարգի պատմական հաղթանակի համար:

Մայիսյան օրերի հետ կապված շատ հիշողություններ ունեն նաև Հայաստանի աշխատավորները: Լրանում է շուտով 40 տարին այն պատմական օրվա, երբ բազմաչարչար Հայաստանը ազատագրվեց իմպերիալիստների գործակալ դաշնակների լծից, վերականգնեց դարերից ի վեր կորցրած իր անկախությունը և բռնեց սոցիալիստական զարգացման կենարար ուղին: Սակայն հեշտ ու խաղաղ կերպով չկատարվեց սովետական կարգերի հաստատումը. Հայաստանի բանվորները, գյուղացիները, բոլոր աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տևական պայքարի ու մեծագույն զոհողությունների գնով նվաճեցին սոցիալիստական կյանքի իրավունքը:

Սովետական կարգերի հաստատման համար Հայաստանի աշխատավորների, Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած անձնուրաց պայքարի ամենավառ, հերոսական էջերից մեկը գրվեց 1920 թվականի մայիսին:

Շատ մայիսներ էր տեսել Հայաստանը անցյալում, բայց ոչ մի մայիս այնպես վառ, հրաբորբոք, ռևոլյուցիոն իրադարձություններով հարուստ չէր եղել, ինչպես այդ տարվա մայիսը: Կարծես ձմեռվա սառցակապանքներից ձերբազատված գարնանային վարար առվակների հետ հորդեց և ժողովրդական ցասման խոր գետը: Պատերազմի ու կոտորածի, սովի ու մահվան սև ճիրաններից ազատագրվելու վերաբերյալ աշխատավորական մասսաների հույսերն այդ մայիսին է՛լ ավելի ամրապնդվեցին, իրական դարձան: Հյուսիսում, Սովետական մեծ Ռուսաստանում, Կարմիր Բանակը ջախջախելով դենիկինյան բանդաներին՝ սրընթաց դեպի հարավ շարժվեց՝ ազատագրելով Հյուսիսային Կովկասը: Մայիսի 1-ի նախօրյակին Կարմիր Բանակի օգնությամբ Ադրբեջանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները տապալեցին մուսավաթականների հակաժողովրդական, ռեակցիոն ռեժիմը և հաստատեցին Սովետական իշխանություն: Հայաստանի սահմանագլխին կանգնեց ազատարար Կարմիր Բանակը: Սովետական Ռուսաստանի հաղթանակները և բանվորա-գյուղացիական իշխանության հաստատումը Ադրբեջանում ռևոլյուցիոն չտեսնված

խանդավառություն առաջացրին Հայաստանի քաղաքներում ու գյուղերում: «Ադրբեջանն ազատագրվեց, հերթը Հայաստանինն է»—ահա այն նվիրական գաղափարը, այն հաստատ համոզմունքը, որ համակել էր աշխատավորական մասսաներին: Այս ոգեշնչող իրադարձությունների պայմաններում տեղի ունեցան 1920 թվականի մայիսմեկյան ցույցերը:

Զինված դաշնակցականների ձեռք առած նախազգուշական միջոցներին, կոմունիստների բազմաթիվ ձերբակալություններին ու արտաքսումներին, Հայաստանի համարյա բոլոր շրջաններում աշխատավորական լայն մասսաները դուրս եկան մայիսմեկյան ցույցի՝ կոմունիստական պարտիայի շարասյուներում: Մայիսմեկյան տոնակատարությունը դարձավ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ուժերի իսկական մարտական զորատես: Ցուցարարները համարձակորեն տանում էին «Կորչի՛ դաշնակների ավազակային կառավարությունը», «Կորչե՛ն իմպերիալիստները», «Կեցցե՛ Սովետական Ռուսաստանը», «Կեցցե՛ Սովետական Հայաստանը», «Կեցցե՛ Կոմունիստական պարտիան» մարտական լոզունգները: Ամենուրեք միտինգներում մասսաները մեծ հետաքրքրությամբ ու վստահությամբ ունկնդրում էին Կոմունիստական պարտիայի հռետորներին: Նույնիսկ դաշնակցական բանակի զորամասերը, որոնց մեջ կոմունիստները ընդհատակյա աշխատանք էին տարել, մի շարք վայրերում դուրս գալով զորանոցներից՝ միացան աշխատավորների շքերթին, գնացին բոլշևիկների հետևից:

Հազարավոր ցուցարարներ այդ օրը կարմիր դրոշներով, համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի դիմանկարներով, Ինտերնացիոնալի խրոխտ հնչյունների տակ անցան Հայաստանի քաղաքների ու գյուղերի փողոցներով՝ ցուցադրելով Սովետական Ռուսաստանի նկատմամբ բարեկամության իրենց ջերմ զգացմունքները, իմպերիալիստական գաղութարարների ու նրանց դաշնակցական մանկլավիկների դեմ պայքարը մինչև վերջ հասցնելու պատրաստակամությունը:

Շատ տեղերում ցուցարարները, ի նշան համերաշխության, ողջույնի հեռագրեր ուղարկեցին Ադրբեջանի Սովետական նորաստեղծ ռեսպուբլիկային, եղբայրական ադրբեջանական ժողովրդին: Ադրբեջանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեին շնորհավորական հեռագրեր ուղարկեցին Կոմունիստական պարտիայի Հայաստանի Կոմիտեն, Ալեքսանդրոպոլի կոմիտեն:

Մայիսմեկյան ցույցերի ժամանակ Կոմունիստական պարտիայի հաջողությունները Երևանում, Ալեքսանդրոպոլում, Ղարսում, Սարիղամիշում, Ղարաքիլիսայում, Դիլիջանում և այլ վայրերում ցույց տվին, թե որքա՜ն խոր արմատներ էր գցել Կոմունիստական պարտիան Հայաստանում, թե որքա՜ն մոտ էին ու հարազատ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, Սովետական իշխանության գաղափարները Հայաստանի աշխատավորության սրտին:

Մայիսյան ցույցերը միաժամանակ կտրուկ կերպով դրին դաշնակցական կառավարության տապալումը գործնականում կազմակերպելու և իրագործելու հարցը: Բանվորները, աշխատավոր գյուղացիությունը տարերայնորեն ձգտում էին ապստամբության: Դաշնակցական կառավարության դեմ



ոտքի էր կանգնել և Հայաստանի ճնշված ու դաժան հալածանքների ենթարկված ռուս, ադրբեջանական, հույն ու քուրդ բնակչությունը:

Հայաստանի սահմաններին Կարմիր Բանակի մոտենալուց, Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակից և ռեսպուբլիկայում ռևոլյուցիոն անհախընթաց վերելքից մեծագույն տագնապ էր ապրում դաշնակցությունը: Հաշվի առնելով ստեղծված ռևոլյուցիոն սիտուացիան՝ Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունները 1920 թվականի հունվարյան կոնֆերենցիայի որոշման համապատասխան ձեռնամուխ եղան ապստամբության կազմակերպմանը:

Ապստամբության դրոշը առաջինը բարձրացրին Ալեքսանդրոպոլի բանվորները, որոնց միացան նաև քաղաքի կայազորի զինվորները:

Ալեքսանդրոպոլի բոլշևիկների խիզախ, համարձակ նախաձեռնությունը լայն արձագանք գտավ ամբողջ Հայաստանում: Մայիսի 7-ին Ալեքսանդրոպոլում ՌԿ(բ)Պ Արմենկոմի, քաղաքի և մի շարք շրջանների պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչների նիստում ստեղծվեց Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե: Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեներ ստեղծվեցին նաև Կարսում, Սարիղամիշում, Դիլիջանում, Նոր Բայազեդում և այլ քաղաքներում ու շրջաններում: ՌԿ(բ)Պ Ալեքսանդրոպոլի և Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեների ղեկավարությամբ կազմակերպվեց Կարմիր Գվարդիա, որի շարքերում ընդգրկվեցին հիմնականում Ալեքսանդրոպոլի երկաթուղային դեպոյի բանվորները: Ապստամբության զինված հենարանը դարձավ «Վարդան Զորավար» զրահապատ գնացքը՝ Սարգիս Մուսայելյանի հրամանատարությամբ: Ապստամբության կողմն անցած զինվորներից կազմակերպվեցին Հայաստանի Կարմիր Բանակի առաջին ջոկատները:

1920 թվականի մայիսի 10-ին Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեն, հենվելով ապստամբած բանվորների, զինվորների և գյուղացիների կամքի վրա, Հայաստանում Սովետական իշխանություն հռչակեց:

Ալեքսանդրոպոլում բռնկված ապստամբությանը մայիսի 10-ին հետևեցին ապստամբությունները Քավթառլուում, Կարսում, Սարիղամիշում. մայիսի 13-ին ապստամբություն ծավալվեց Նոր Բայազեդի գավառում: Աշխատավոր գյուղացիությունը և ռևոլյուցիոն զինվորները կոմունիստների ղեկավարությամբ մայիսի 17-ին գրավեցին Նոր Բայազեդ քաղաքը: Մայիսի 14—19-ին սկսվեց ապստամբությունը Շամշադինի, Իջևանի և Դիլիջանի շրջաններում: Ապստամբներին հաջողվեց դաշնակների լծից ազատագրել տասնյակ գյուղեր: Դաշնակների տիրապետության դեմ հերոսական մարտեր ծավալեցին Գորիսի, Սիսիանի, Ղափանի բանվորները ու չքավոր գյուղացիները: Ապստամբությունները մի շարք շրջաններում վերածվեցին քաղաքացիական երկարատև կռիվների: Դաշնակցական բանդաներին երկու ամսից ավելի տոկուն կերպով դիմադրում էր Իջևանի ու Շամշադինի ռևոլյուցիոն գյուղացիությունը: Այս շրջանների ապստամբներին բարոյական ու նյութական աջակցություն ցույց տվին հարևան Սովետական Ադրբեջանի աշխատավորները և 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը:

Երբ տարածվում էր ապստամբության հրդեհը Հայաստանի նաև մյուս շրջաններում և շարժման մեջ էին մտնում աշխատավորական նորանոր մասսաներ՝ դաշնակցականներին հաջողվեց առաջին հարվածից ուշքի գալ, մոբի-

լիզացնել բոլոր հակասովետական ուժերին և իմպերիալիստների աջակցությամբ զենքի ուժով հերթականորեն ճնշել անջատ-անջատ սկսված ապստամբությունները, գազանային հաշվեհարդար տեսնել կոմունիստների, ռևոլյուցիոն բանվորների, գյուղացիների ու զինվորների հետ: Ապստամբությունները ճնշելու համար դաշնակները կանգ չէին առնում ոչ մի միջոցի առաջ— շանտաժի ու պրովոկացիաների կազմակերպում, շովինիստական կրքերի բորբոքում, պարենամթերքի պահեստների նախապես կազմակերպված թալան՝ ըմբոստացած քաղաքների բնակչությանը սովամահության դատապարտելու համար, տեռորիստական ակտերի գործադրում ակտիվ կոմունիստների և անպարտիականների դեմ, թալանի ու սպանությունների վարժված խմբապետական-մաուզերիստական տարրերի մոբիլիզացիա և այլն, և այլն:

Մայիսյան ապստամբության ճնշումը վերջնականապես դրսևորեց դաշնակների տիրապետության տեռորիստական էությունը: Այն ժամանակ, երբ կոմունիստները գրավելով իշխանությունը համարյա ոչ մի տեղ հաշվեհարդար չտեսան դաշնակների հետ և անում էին ամեն ինչ քաղաքացիական կռիվ չբորբոքելու համար, դաշնակները բոլշևիկների այդ վերաբերմունքին պատասխանեցին ամենադաժան պատիժներով ու սպանությունների գործադրումով: Բուրժուազիան անողոք վրեժ էր լուծում ապստամբներից: Երևանի, Ալեքսանդրոպոլի, Կարսի, Սարիղամիշի, Դիլիջանի բանտերը լցվեցին հարյուրավոր ռևոլյուցիոներներով: Դաշնակցական կառավարության կազմակերպած ռազմա-դաշտային դատարանները աջ ու ձախ, հապշտապ մահապատժի, տաժանակիր բանտարկության էին ենթարկում տասնյակ ու հարյուրավոր բանվորների, գյուղացիների, զինվորների, ինտելիգենտների: Միմիայն Կարսի մարզում գնդակահարության ենթարկվեցին հարյուրից ավելի ապստամբներ: Մեծ ճանապարհի ավազակներին հատուկ ամարդությամբ դաշնակցական կառավարողները վերահաս պատասխանատվությունից սարսափած, շատ ռևոլյուցիոներների գնդակահարում էին գաղտագողի, աշխատելով ամեն կերպ թաքցնել իրենց ոճրագործության հետքերը:

Դաշնակների դեմ մղվող մարտերում հերոսի մահով ընկավ ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեի անդամ, Կարսի ապստամբության ղեկավար Ղուկաս Ղուկասյանը, ապստամբության ակտիվ մասնակիցներ Պետյա Ցավրակովը, Սուրեն Տառուկյանը, Վասիլի Ռադինովը և ուրիշներ:

Դաշնակները գազանաբար տանջամահ արին, գնդակահարեցին Սարիղամիշի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի անդամներ՝ Անդրանիկ Ճուղուրյանին, Պավել Կոխմալյակինին, Սամվել Ոսկանյանին, Նոր Բայազետի ապստամբության ղեկավարներ՝ Հովհաննես Սարուխանյանին, Բատիկ Բատիկյանին, Դիլիջան-Իջևան ապստամբության ղեկավարներ՝ Ենոք Մկրտումյանին, Սեդրակ Հակոբջանյանին, Վասիլի Ալեքսեևին, Զանգեզուրի կոմունիստական կազմակերպության աչքի ընկնող գործիչներ՝ Բագրատ Հարությունյանին, Մկրտիչ Մաշուրյանին, Քրիստափոր Մկրտչյանին, Եղյա Իսկանդարյանին, Քավթառլուի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի նախագահ Արշալույս Փանյանին, ՌԿ(բ)Պ Ալեքսանդրոպոլի Կոմիտեի անդամներ՝ Բագրատ Ղարիբջանյանին, Եգոր Սեյանին, Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի անդամ և Կարմիր Բանակի հրամանատար Սարգիս Մուսայելյանին, Ռազմա—ռևոլյուցիոն Կոմիտեի անդամ Արտաշես Մելքոնյանին, ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեի անդամ



Ստեփան Ալավերդյանին և Կոմունիստական պարտիայի ու ժողովրդի շատ ու շատ ուրիշ անձնվեր զավակների:

Դաշնակների արյունոտ տեռորի զոհերը դեռ ավելի շատ կլինեին, եթե վճռական բողոքով հանդես չգային Սովետական Ռուսաստանի կառավարությունը, Կոմունիստական Ինտերնացիոնալի գործադիր Կոմիտեն, Ադրբեջանի ու Վրաստանի պարտիական կազմակերպություններն ու աշխատավորական մասսաները:

Սովետական Ռուսաստանի կառավարությունը, ՌՍՖՍՌ լիազոր ներկայացուցիչները Վրաստանում ու Հայաստանում բազմիցս դիմեցին դաշնակցական կառավարությանը՝ պահանջելով վերջ տալ կոմունիստների և ռևոլյուցիոն բանվորների ու գյուղացիների գնդակահարություններին, ձերբակալություններին և այլ հալածանքներին: Սովետական կառավարությունը դաշնակների տեռորիստական մոլուցքը զսպելու համար ձեռք առավ գործնական միջոցներ, հարկադրելով նրանց ի վերջո դադարեցնելու գնդակահարությունները:

Հայ ժողովրդի կյանքի այդ ծանր օրերին, երբ հրով ու սրով փորձում էին վերջ տալ նրա ազատագրական պայքարին, երբ տանջամահ էին անում նրա լավագույն զավակներին, ի պաշտպանություն Հայաստանի Կոմունիստական պարտիայի, Հայաստանի ռևոլյուցիոն բանվորներին ու գյուղացիներին իրենց եղբայրական ձեռքը մեկնեցին Սովետական Ադրբեջանի ու Վրաստանի աշխատավորները: Ադրբեջանի Կոմունիստական պարտիան, Ռևկոմը, Ադրբեջանի աշխատավորները սիրով ընդունեցին ու պատսպարեցին դաշնակների տեռորից ազատված հազարավոր հայ բանվորներին ու գյուղացիներին: Նրանք կազմակերպեցին նյութական օգնություն Հայաստանի բանտերում տառապող հարյուրավոր ռևոլյուցիոներների ու նրանց ընտանիքների համար: Ադրբեջանում ապաստանած Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Արտասահմանյան բյուրոն ՌԿ(բ)Պ Կենտկոմի, ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոյի ղեկավարությամբ Ադրբեջանի Կոմպարտիայի Կենտկոմի ակտիվ աջակցությամբ մայիսյան ապստամբությունից հետո մեծ գործունեություն ծավալեց՝ Հայաստանում պարտիական կազմակերպությունները վերականգնելու, մասսաներին նոր պայքարի նախապատրաստելու համար:

Հայաստանի կոմունիստների կյանքի փրկության համար խոշոր նշանակություն ունեցան Ադրբեջանի Կոմպարտիայի Կենտկոմի, պրոֆեսիոնալ միությունների և այլ կազմակերպությունների վճռական բողոքներն ու նախազգուշացումները դաշնակցական կառավարությանը:

Չնայած Վրաստանում տիրող մենշևիկյան հակաժողովրդական ռեժիմին, մենշևիկյան կառավարության համերաշխությանը, դաշնակցական չարագործների գործողություններին, Վրաստանի կոմունիստները և աշխատավորները նույնպես անում էին իրենցից կախված ամեն ինչ՝ օգնելու Հայաստանի իրենց բանվորա-գյուղացիական եղբայրներին: Վրաստանի Կոմունիստական պարտիայի՝ Թիֆլիսի, Քութայիսի, Փոթիի և բազմաթիվ այլ քաղաքների ու գյուղերի պարտիական կազմակերպություններն իրենց ժողովներում, միտինգներում ընդունում էին բողոքի բանաձևեր դաշնակների դեմ, կոչ էին անում Վրաստանի և Անդրկովկասի բոլոր աշխատավորներին՝ պաշտպանելու Հայաստանի բանվորների ու գյուղացիների արդար պայքարը: Վրաստանի Կո-

մունիստական պարտիայի Թիֆլիսի Կոմիտեն բոլոր ռևոլյուցիոն և բանվորական կազմակերպություններին և բանվորա-գյուղացիական մասսաներին ուղղած իր դիմումի մեջ գրում էր.

«Ամբողջ աշխարհի բանվորա-գյուղացիական մասսաների առաջ բարոյապես սնանկացած ու խայտառակված հայ դաշնակցական կառավարությունը՝ գազանային կատաղությամբ գնդակահարում է կոմունիստական գաղափարի քաջարի մարտիկներին:

...Վրաստանի Կոմունիստական պարտիայի Թիֆլիսի Կոմիտեն, հարգելով գնդակահարված կոմունիստների թանկագին հիշատակը, հանձին Ստ. Ալավերդյանի, Մուսայելյանի, Ղարիբջանյանի և մյուսների, որոնք զոհաբերվեցին ռևոլյուցիայի սեղանի վրա դաշնակցական սև ռեակցիայի դահիճների ձեռքով, դիմում է հանուն ռևոլյուցիայի և արդարության ամբողջ աշխարհի բոլոր ռևոլյուցիոն և բանվորական կազմակերպություններին, III Ինտերնացիոնալի Գործադիր Կոմիտեին, Վրաստանի, Հայաստանի բոլոր պրոֆեսիոնալ միություններին, գործարանային կոմիտեներին, բանվորա-գյուղացիական մասսաներին և այն բոլոր ռևոլյուցիոներներին, որոնք բանվորական դատի և ռևոլյուցիոն գաղափարների ազնիվ պաշտպանն են հանդիսանում,— մեր կազմակերպության հետ միասին միահամուռ ու եռանդուն կերպով բողոքել դաշնակցական կառավարության սպիտակ տեռորի, գնդակահարությունների և գազանային հալածանքների դեմ, որ սկսվել են Հայաստանում կոմունիստների և նրանց հետևողների ու համակրողների նկատմամբ:

Միահամուռ զայրույթով բողոքում և պահանջում ենք ընդհատել տեռորը, հալածանքները, ազատել բանտերում հեծող և սովամահության դատապարտված կոմունիստներին ու համակրողներին և լիակատար երաշխիք տալ անձի անձեռնմխելիության դաշնակցական կառավարության պատասխանատու դահիճների հանդեպ»:

Հայաստանի ապստամբ բանվորների ու գյուղացիների նկատմամբ Սովետական Ռուսաստանի, Ադրբեջանի, Վրաստանի աշխատավորների ցուցաբերած այս ջերմ վերաբերմունքը և եղբայրական օգնությունը աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության ու համագործակցության լավագույն օրինակ էր, Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի գործի հաղթանակի մի վառ գրավական:

Մայիսյան ապստամբությունը Հայաստանում ժողովրդական ցասման մի պատահական, հանկարծակի ու տարերային բռնկում չէր: Այդ ապստամբությունը ամենից առաջ, ուներ շեշտված դասակարգային, սոցիալական բնույթ: Այն նպատակ ուներ Հայաստանում հաստատելու սոցիալ-քաղաքական այն կարգերը, որ ստեղծվել էին Ռուսաստանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով: Բուրժուա-կալվածատիրական դասակարգերի կողմից Անդրկովկասի ու Հայաստանի անջատումը Սովետական Ռուսաստանից և նրանց իմպերիալիստական պետությունների շահերին ենթարկելը, դաշնակների ապիկար տիրապետության ծանր հետևանքները՝ երկրի տնտեսական քայքայման պրոցեսի կատաստրոֆիկ աճը, պերմանենտ պատերազմները ու ազգամիջյան կոտորածները, անարխիան, իշխանությունների ու դաշնակցական զինված բանդաների կամայականությունները, սպեկուլյացիան, սովն ու մահը, որոնք ժողովրդին կանգնեցրել էին ֆիզիկական բնաջնջման առաջ,



վերջնականապես համոզեցին աշխատավորական լայն մասսաներին, որ փրկության միակ ելքը, առանց շահագործողների, խաղաղ, ստեղծագործ աշխատանքի անցնելու միակ միջոցը Սովետական իշխանության հաստատումն է, Սովետական Ռուսաստանի հետ եղբայրական դաշինքով միանալը: Կարմիր Բանակի Կովկաս մտնելը և Ադրբեջանում սովետական կարգերի հաստատումը նպաստավոր պայմաններ ստեղծեցին իրագործելու ցանկալի նպատակը:

Մասսաները իրենց փորձով համոզվեցին նաև, որ Սովետական իշխանության հաղթանակի միակ կազմակերպիչ ու ղեկավարող ուժը Ռուսաստանի Կոմունիստական պարտիան է և նրա Հայաստանի ջոկատը: Ահա թե ինչու Կոմունիստական պարտիան Հայաստանում 1919 թվականի վերջից արագորեն սկսեց ընդարձակել իր շարքերը, դառնալ երկրում քաղաքական լուրջ ու հեղինակավոր, ազդեցիկ ուժ: Կոմունիստական պարտիայի հետևից էր գնում ո՛չ միայն բանվոր դասակարգը, այլև, որ շատ կարևոր էր Հայաստանի նման ագրարային երկրում, աշխատավոր գյուղացիությունը:

Մայիսյան հերոսական ապստամբության կազմակերպիչը, ղեկավարն ու ոգեշնչողը Կոմունիստական պարտիան էր: Կոմունիստները ապստամբության ոգին էին: Ապստամբության մեջ նրանք ռևոլյուցիոն սխրագործությունների, անձնազոհության ու հերոսության բացառիկ օրինակ ցույց տվին: Ապստամբության թափն ու ծավալը խոսում է նրա մասսայական, համարյա համաժողովրդական բնույթի մասին: Շարժման ավանգարդում ընթանում էր բանվոր դասակարգը: Ապստամբության նախաձեռնողները կոմունիստների ղեկավարությամբ Ալեքսանդրոպոլի դեպոյի ու երկաթուղու բանվորները էին: Նրանց միացան ռևոլյուցիոն զինվորները և Հայաստանի մի շարք շրջանների գյուղացիությունը: Ապստամբության հաջող զարգացման դեպքում կասկած չի կարող լինել, որ նրան կհարեին Հայաստանի բոլոր շրջանների գյուղացիները:

Մայիսյան փառապանծ ապստամբությունը, չնայած նրա պարտությանը, խոշոր նշանակություն ունեցավ Սովետական իշխանության հետագա հաղթանակի ու ամրապնդման համար Հայաստանում: Դա Հայաստանի և Անդրկովկասի պրոլետարիատի ռևոլյուցիոն պատմության ամենափառավոր էջերից մեկն է:

Սովետական մարդկանց հիշողության մեջ միշտ կմնա մայիսյան ապստամբության հերոսների կերպարը: Միայն մեծ գաղափարի, միայն արդար գործի համար մղվող պայքարը կարող էր ծնել այդպիսի հերոսներ: Ո՛չ ապստամբության պարտությունը, ո՛չ դաշնակցական դահիճների դաժան տեռորն ու խոշտանգումները չկարողացան ընկճել ռևոլյուցիոն մարտիկներին, չկարողացան շեղել նրանց կոմունիզմի ուղուց: Բանտերում, դատարաններում, մահապատժի ժամանակ նրանք ցուցաբերեցին բացառիկ տոկունություն, բարձր պահելով Կոմունիստական պարտիայի անդամի արժանապատվությունը: Երբեք չեն մոռացվի այն խոսքերը, որ ասել են իրենց մահապատժից առաջ մայիսյան ապստամբության ականավոր ղեկավարները:

«Կճոճվեմ կախաղանի վրա, բայց ռևոլյուցիային չեմ դավաճանի», — հայտարարել է Հ. Սարուխանյանը:

«Այս տասնմեկ օր է,— գրել է Ե. Մկրտումյանը,— որ րոպե-րոպե սպասում եմ գնդակահարման: Պատկերանում է իմ ամբողջ կյանքն ու վերջին գործունեությունը իմ առաջ, բայց և ոչ մի վայրկյան մինչև այժմ զղջումը կամ

սարսափը մտքովս չի անցել, հանգիստ եմ միանգամայն, հանգիստ հոգով էլ սպասում եմ դատավճռի»:

Երևանի բանտից Ստ. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը և Բ. Ղարիբջանյանը իրենց ընկերներին գրել են.

«Մենք զգում ենք, որ մեզ տանում են գնդակահարության: Համոզված եղեք, որ մենք համարձակ և անվախ նայում ենք մահվան երեսին: Մենք մեզ բախտավոր ենք համարում, որ նահատակ ենք լինում հանուն կոմունիստական ռևոլյուցիայի: Թող մեր մահը ձեր ուժերը եռապատկի, ոչ մի թուլամորթության տեղիք չտաք: Մենք համոզված ենք և դրանով բախտավոր, որ կոմունիստական ռևոլյուցիայի ձայնը ոչ միայն չի լռի, այլև ավելի ու ավելի կուժեղանա:

Ուրեմն, թանկագին ընկերներ, մնաք բարով, շարունակեցեք ձեր գործը ընդդեմ կապիտալիստական աշխարհի»:

Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակի անխուսափելիության մասին մայիսյան ապստամբության նահատակների այս անհողդողդ հավատքը շուտով իրականացավ: Հայաստանի Կոմունիստական պարտիան ծանր զոհեր կրեց, բայց նա կենդանի մնաց: Նա շարունակեց իր գործունեությունը: Զոհվածներին փոխարինելու եկան նոր ընկերներ, նոր ուժեր և մայիսյան հերոսական ապստամբության փորձով հարստացած Հայաստանի Կոմունիստական պարտիան բանվորներին ու գյուղացիներին կազմակերպեց նոր ապստամբության: Հայաստանի աշխատավորներին մեծ Լենինի ցուցումով օգնության եկավ Սովետական Ռուսաստանի Կարմիր Բանակը: Դաշնակների և նրանց իմպերիալիստական տերերի լուծը տապալվեց: Ընդմիշտ հաղթեց Սովետական իշխանությունը Հայաստանում:

Եվ այժմ, մայիսյան ապստամբությունից 40 տարի հետո, երբ Հայաստանը Սովետական Միության ռեսպուբլիկաների համերաշխ ընտանիքում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ դարձել է սոցիալիստական ծաղկուն ռեսպուբլիկա և հաջողությամբ առաջ է ընթանում կոմունիզմի շինարարության ուղիով, նա երախտապարտությամբ է նշում իր հերոս զավակների մեծ սխրագործությունը, նրանց անգնահատելի ավանդը՝ ներդրված այսօրվա մեր ազատ կյանքի հիմքում:

Շատ վառ ու երջանիկ մայիսներ դեռ կգան, բայց 1920 թվականի մայիսը հայ ժողովրդի սրտում միշտ վառ կմնա, միշտ կփայլի, որպես իր ռևոլյուցիոն ազատագրական պայքարի պայծառ մի էջ:

---



# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԱՍԵՐԸ ՉՊԵՏՔ Է ՄՈՌԱՆԱԼ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Տասնհինգ տարի առաջ՝ 1945 թվականի մայիսի 9-ին Եվրոպայում լռեցին երկրորդ համաշխարհային պատերազմի համազարկերը: Ավելի քան հինգ և կես տարվա արյունահեղությունից հետո հակաֆաշիստական կոալիցիայի միացյալ ուժերով հիտլերյան Գերմանիան ծունկի էր բերված և ստիպված էր ընդունել անվերապահ կապիտուլյացիայի պայմանները: Ֆաշիստական Գերմանիայի ջախջախումը կանխորոշեց պատերազմի ելքը, թեև Հեռավոր Արևելքում այն շարունակվեց մինչև 1945 թվականի սեպտեմբերի 2-ը՝ մինչև իմպերիալիստական Ճապոնիայի կապիտուլյացիան:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմը ամենախոշորն էր մարդկության պատմության մեջ: Նրան մասնակցում էին 61 տերություններ 1 միլիարդ 700 միլիոն բնակչությամբ, որը երկրագնդի բնակչության 80 տոկոսն էր կազմում:*

*Պատերազմող երկրները զենքի տակ էին կոչել 110 միլիոն մարդ: Պատերազմը բացառիկ մեծ մարդկային զոհեր և նյութական վնաս պատճառեց պատերազմող երկրներին: Սակայն նրա հիմնական ծանրությունը սովետական ժողովուրդը տարավ իր ուսերի վրա:*

*Մինչև ատամները զինված թշնամու հետ մղած արյունոտ գոտեմարտում սովետական ժողովուրդը ոչ միայն կարողացավ պաշտպանել իր սոցիալիստական Հայրենիքը, այլև վերահաս կործանումից փրկեց համաշխարհային քաղաքակրթությունը: Նա պատվով կատարեց իր պատմական մեծ միսիան մարդկության առջև, ֆաշիզմի լծից ազատագրելով Եվրոպայի ստրկացված ժողովուրդներին, այդ թվում և գերմանական ժողովրդին:*

*Ֆաշիստական Գերմանիայի պարտությունը վիթխարի փոփոխություններ առաջացրեց ամբողջ աշխարհում. էլ ավելի խորացավ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, կապիտալիստական սիստեմից դուրս եկան և սոցիալիստական զարգացման ուղին թևակոխեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ, այդ թվում և ավելի քան 650 միլիոն բնակիչ ունեցող Չինաստանը:*

*Դա պատերազմի կարևորագույն քաղաքական արդյունքն էր: Սովետական Միությունը պատերազմից դուրս եկավ քաղաքականապես է՛լ ավելի մոնոլիտ և համախմբված, ռազմական տեսակետից է՛լ ավելի հզորացած: Աննախընթաց չափով մեծացավ նրա դերը և նշանակությունը միջազգային ասպարեզում:*

*Պատերազմի մյուս կարևոր արդյունքը հանդիսացավ ազգային-ազատագրական պայքարի նոր հզոր վերելքը գաղութային և կախյալ երկրներում: Սկսվեց իմպերիալիզմի գաղութակալական սիստեմի փլուզումը: Պատերազմը*

հստակ կերպով ցույց տվեց սոցիալիստական պետական և տնտեսական կարգի անվիճելի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։ Սովետական ժողովրդի հաղթանակը Եվրոպայի և Ասիայի միլիոնավոր աշխատավորների մոտ առաջացրեց անհաղթահարելի ձգտում դեպի սոցիալիզմը, որի գաղափարներն իրոք դառնում են ամբողջ աշխատավոր մարդկության խոհերի տիրակալը։

***

Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատերազմները հանդիսացան կապիտալիզմի հակասությունների ծայր աստիճան սրման արդյունք։ Երկրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծեցին կապիտալիստական սիստեմի առավել ագրեսիվ տերությունները՝ Գերմանիան, Իտալիան և Ճապոնիան, սակայն այդ բանում մեղավոր էին նաև Անգլիայի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները։

Պատերազմի նախօրյակին եթե իմպերիալիստական երկու կոալիցիաների միջև եղած մրցակցությունը բաժանում էր նրանց, ապա Սովետական Միության նկատմամբ ունեցած ատելությունը և վերջինիս հաշվին սեփական հակասությունները լուծելու ձգտումը ստիպում էր նրանց միավորվել։ Իմպերիալիստական տերությունների հակասովետական ծրագրերում հիտլերյան Գերմանիային հատկացվում էր վճռական դեր, որպես գլխավոր հարվածող բռունցքի, որի ռազմական պոտենցիալը հզորացնելու նպատակով արևմտյան տերությունները «չմիջամտելու» և «չեզոքության» քաղաքականության անվան տակ ըստ էության խրախուսում էին գերմանական միլիտարիզմի վերածնունդը և ագրեսիվ ակտերը Եվրոպայում։ Դրանում առանձնապես մեծ էր ամերիկյան կապիտալի դերը։

Հիտլերյան ֆաշիզմի ագրեսիվ քաղաքականությունը խրախուսելու իմպերիալիստական քաղաքականությունն իր գագաթնակետին հասավ Մյունխենյան գործարքի ժամանակ՝ 1938 թվականի աշնանը։ Մյունխենյան համաձայնությամբ Անգլիան և Ֆրանսիան ֆաշիստական Գերմանիայի հոշոտմանը հանձնեցին իրենց դաշնակից պետությանը՝ Չեխոսլովակիան, Հիտլերի առաջ բացելով ռազմական արշավանքի դռները դեպի Արևելք, նպատակ ունենալով ֆաշիստական ագրեսիան ուղղել Սովետական Միության դեմ։

Սակայն Անգլիան և Ֆրանսիան շատ շուտով ստիպված էին քաղել իրենց քաղաքականության դառը պտուղները։ Նրանց չհաջողվեց խուսափել պատերազմից։

Պատերազմը հնարավոր չեղավ կանխել։ Բայց հակաիմպերիալիստական, հակապատերազմական ուժերի առկայության շնորհիվ երկրորդ համաշխարհային պատերազմը, որը սանձազերծվեց որպես իմպերիալիստական պայքար աշխարհի վերաբաժանման համար, շուտով վերաճեց արդարացի պատերազմի՝ ուղղված ֆաշիզմի դեմ։ Հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը Սովետական Միության վրա, մեր երկրի ներքաշվելը պատերազմի մեջ նոր վճռական գործոն հանդիսացավ և վերջնականապես որոշեց պատերազմի արդարացի ազատագրական բնույթը հակաֆաշիստական կոալիցիայի երկրների համար։

Ամբողջ պատերազմի ընթացքում ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի կառավարող



շրջանները հակառակ դեմոկրատական, հակաֆաշիստական ուժերի ձգտումների, չհրաժարվեցին ՍՍՌՄ-ը թուլացնելու, արյունաքամ անելու պլաններից, որն իր արտահայտությունը գտավ առանձնապես երկրորդ ճակատի բացման հարցում նրանց վարած քաղաքականության մեջ։ Այդ պատճառով միանգամայն օրինաչափ է, որ ՍՍՌՄ-ը հանդիսացավ այն կազմակերպող և ղեկավար ուժը, որը գլխավորեց ազատասեր ժողովուրդների պայքարը ընդդեմ ֆաշիզմի։ Այդ պետք է բացատրել ոչ միայն նրանով, որ պատերազմի հիմնական ծանրությունն ընկած էր ՍՍՌՄ-ի վրա, այլև նրանով, որ ՍՍՌՄ-ի նպատակներն ու ձգտումները այդ պատերազմում ամբողջովին համընկնում էին ֆաշիզմի դեմ մարտնչող ժողովուրդների նպատակներին ու ձգտումներին։

Ֆաշիստական Գերմանիայի պարտությունից հետո Սովետական կառավարությունը պահանջեց գերմանական հարցում մշակել այնպիսի միջոցառումներ, որոնք բացառեին Գերմանիայի վերառազմականացումը, նացիզմի վերակենդանացումը և նոր պատերազմի հնարավորությունը Եվրոպայում։

Սակայն դեռ չէր չորացել թանաքը Պոտսդամի պայմանագրի էջերի վրա, երբ արևմտյան տերությունները սկսեցին մեթոդիկ կերպով խախտել նրա կետերը՝ Գերմանիայի իրենց օկուպացիոն գոտիներում հող ստեղծելով գերմանական միլիտարիզմի վերածննդի համար։ Ավելին, ուղղակի ոտնահարելով Պոտսդամի պայմանագիրը, նրանք արևմտյան օկուպացիոն գոտիների տերիտորիայում ստեղծեցին Գերմանիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկան, որի գլուխ կանգնեցին հակադեմոկրատական, ռևանշիստական տարրեր։ Հակառակ դրան ստեղծվեց Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը դարձել է խաղաղության պատվարը Եվրոպայում։ Արևմտյան տերությունների ողորմածությամբ Արևմտյան Գերմանիան այժմ դարձել է վտանգավոր պալար Եվրոպայի օրգանիզմում, որը պայթելով, պատերազմի թույնով կարող է վարակել ամբողջ աշխարհը։ ԳՖՌ-ն ընդգրկելով Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ՝ արևմտյան տերությունները փաստորեն օրինականացրին նրա վերազինումը։

Այսօր Արևմտյան Գերմանիայում քաղաքական կյանքի հիվանդոտ զարկերակը դարձել է ռևանշիզմը, որին արյուն մատակարարող սիրտը նույն ֆինանսական մագնատներն են, որոնք Հիտլերին հնարավորություն տվին իշխանությունը զավթելու և Գերմանիան վերածելու պատերազմի օջախի Եվրոպայում։ Արևմտագերմանական տնտեսության մեջ նորից տիրապետում են ֆինանսական օլիգարխիայի խոշորագույն ներկայացուցիչները՝ պատերազմական հանցագործներ Կրուպպը, Տիսենը, Պֆերդմենգեսը և ուրիշներ, որոնք ժամանակին սնեցին հիտլերյան ռազմական մեքենան։

Արևմտյան Գերմանիան արագորեն առաջադիմում է տնտեսության ռազմական նշանակություն ունեցող բոլոր ճյուղերում՝ պողպատաձուլության, նավաշինության, քիմիական արդյունաբերության, մեքենաշինության, ավտոմոբիլային արդյունաբերության և այլ ճյուղերում, հետևում թողնելով իր արևմտա-եվրոպական պարտնյորներին։

Ինչպես հիտլերյան Գերմանիայի, այնպես էլ այժմյան արևմտագերմանական տրեստները սերտ կապի մեջ են արևմտյան տերությունների մոնոպոլիստական ընկերությունների հետ։ Արևմտագերմանական մոնոպոլիաներն իրենց են ենթարկել պետական ապարատը, արագորեն ֆինանսավորում են

այն և թելադրում նրան իրենց կամքը։ Կանցլերի մերձավորագույն խորհրդականներն են արևմտագերմանական մոնոպոլիստական կապիտալի խոշորագույն ներկայացուցիչները՝ նույն Պֆերդմենգեսը, Ցիկը, Տիսսենը, Կլեկները, Սիմենսը և ուրիշներ, որոնք հիտլերյան օկուպացիայի տարիներին կողոպտեցին ամբողջ Եվրոպան։

Ինչպես հիտլերյան ռեժիմի ժամանակ, այնպես էլ այժմ ԳՖՌ-ում անասելի հալածանք է սկսվել դեմոկրատական ուժերի դեմ։ 1951 թվականից ԳՖՌ-ում արգելված է 200 դեմոկրատական կազմակերպությունների գործունեությունը։ Միայն 1952 թվականից մինչև 1958 թվականը տեղի է ունեցել մոտ 56 հազար դատավարություն ավելի քան 200 հազար պրոգրեսիվ գործիչների նկատմամբ։ 1956 թվականի օգոստոսի 17-ին Ադենաուերի կառավարությունը օրենքից դուրս հայտարարեց Գերմանիայի Կոմպարտիան։

Իսկական Գերմանիայի ապագան ներկայացնող ուժերի դեմ ծավալված անզուսպ հալածանքներն իրենց զարգացումն են գտնում այն բանում, որ կառավարության ղեկի մոտ և բանակում ավելի հաճախ սկսում են հայտնվել նախկին հիտլերյան ղեկավար գործիչներ, գեներալներ, սպաներ։ Գերմանական հայտնի հրապարակախոս Ձեյդևիցը իր «Գերմանիան Օդերի և Հռենոսի միջև» գրքում գրում է, որ Ադենաուերի կառավարության 18 մինիստրներից 13-ը բանկային արդյունաբերական շրջանների և կալվածատերերի ներկայացուցիչներ են, 9 մինիստր եղել են Հիտլերի ժամանակ նացիստական պարագլուխներ, էսէսականներ, այդ թվում «փախստականների գործով» մինիստր Օբերլենդերը, որը հայտնի է հիտլերյան ռեժիմի տարիներին օկուպացված տերիտորիաներում իր գործած ոճիրներով։ Այժմ ԳՖՌ-ի դատական օրգանների մոտ 9000 դատավորներ և դատախազներ կան, որոնք նախկին նացիստներ են, ըստ որում նրանցից 450-ը եղել են հիտլերյան տրիբունալների և հատուկ դատարանների անդամներ, իսկ 150 հոգի աշխատել են ռազմա-դաշտային դատարաններում։ Ֆաշիստական շատ պարագլուխներ շրջապատված են Բոննի իշխանությունների հոգատարությամբ։ Ռազմական հանցագործ ադմիրալ Դենիցը, որին իրենից հետո Հիտլերը կտակել էր իր իշխանությունը, Նյուրնբերգի դատարանի որոշմամբ 10 տարի բանտում անցկացնելուց հետո ազատ է արձակվել և այժմ ամեն ամիս 1300 մարկա գումարի նպաստ է ստանում պետությունից։ Վերածնվող Վերմախտի շարքերում պաշտոնավարում են 104 գեներալներ, որոնք բոլորն էլ առանց բացառության ծառայել են հիտլերյան ռեժիմին։ Դրանցից 71 հոգի եղել են գլխավոր շտաբի սպաներ, 47-ը ունեցել են գեներալի աստիճան։ Նրանցից առնվազն 7-ի ճակատին դրոշմված է պատերազմական հանցագործի խարանը։ Ավելին, Ատլանտյան պակտի ղեկավարների որոշմամբ նախկին հիտլերյան գեներալները պաշտոնավարում են այդ պակտի զինվորական օրգաններում։

Արևմտյան Գերմանիայում սունկի պես աճում են նեոֆաշիստական ռևանշիստական կազմակերպությունները։ Ամեն կերպ խրախուսվում են այսպես կոչված զինվորական և այլ ռեակցիոն միությունները։ 1957 թ. վերջին դրանց թիվը ԳՖՌ-ում հասնում էր 1176-ի։ Ակտիվ գործունեություն է ծավալել նեոֆաշիստական «Գերմանական կայսերական պարտիան», որի գլուխ կանգնած են նախկին ֆաշիստական պարագլուխներ և որը բացեիբաց կոչ է անում Պոտսդամի որոշումները չեղյալ հայտարարել և վերանայել Օդեր-



Նեյսե սահմանը։ ԳՖՌ-ի կառավարությունը կիրառում է ռազմական լայն միջոցառումներ՝ մտցրել է ընդհանուր զինվորական ծառայություն, ստեղծել է նոր ռևանշիստական բանակ, որի շարքերում հաշվվում է արդեն երեք հարյուր հազար մարդ։ Արդեն պրակտիկ քայլեր են արվում Բունդեսվերը ատոմային զենքով զինելու ուղղությամբ։

Արևմտագերմանական ռևանշիստների ոտնձգությունները միջազգային խաղաղության դեմ ներքին միջոցառումներով չեն սահմանափակվում։ Արևմտյան Գերմանիայի տերիտորիան նրանց համար թվում է նեղ և գնալով Հիտլերի հետքերով՝ Ադենաուերը պաշտոնապես վերականգնում է հանցավոր կապերը Գերմանիայի նախկին դաշնակիցների հետ։ Ստեղծվել է սերտ համագործակցություն ԳՖՌ-ի և ֆրանկոյական Իսպանիայի միջև։ Արևմտագերմանական կառավարությունը Հյուսիս-Ատլանտյան պակտի հովանավորության տակ բանակցություններ է վարում Բելգիայի, Իտալիայի, Հոլանդիայի, Նորվեգիայի, Դանիայի, Հունաստանի տերիտորիաներում Բունդեսվերի համար ռազմական մատակարարման բազաներ ստեղծելու համար։

Ադենաուերի վերջին ուղևորությունը Տոկիո և բանակցությունները Ճապոնիայի կառավարության հետ նպատակ ունեն վերակենդանացնել Բեռլին—Տոկիո տխրահռչակ առանցքը։ Պատահական չէ, որ արևմտա-գերմանական Կանցլերը դրան ձեռնամուխ եղավ ամերիկա-ճապոնական ռազմական դաշնագրի ստորագրումից հետո, որը օրինականացնում է Ճապոնիայի վերազինումը և փաստորեն վերականգնում է պատերազմի երկրորդ օջախը Հեռավոր Արևելքում։

Արևմտագերմանական ռևանշիստներն իրենց ագրեսիվ նպատակներին հասնելու համար ձգտում են ամեն կերպ պահպանել և բորբոքել «սառը պատերազմի» մթնոլորտը։ Նրանց ծայր աստիճան կատաղեցնում է միջազգային լարվածության նկատելի մեղմացումը, որին հնարավոր եղավ հասնել Սովետական կառավարության անխոնջ ջանքերի շնորհիվ։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի պատմական այցելությունը ԱՄՆ և Ֆրանսիա, նրա բազմաթիվ ելույթները, պրես-կոնֆերանսները, հայտարարությունները զգալի չափով նպաստեցին Արևելքի և Արևմուտքի փոխհարաբերությունների բարելավմանը և նոր հնարավորություններ ստեղծեցին միջազգային վիճելի պրոբլեմների, այդ թվում նաև գերմանական հարցի լուծման համար։ Ժողովուրդները երախտագիտությամբ դիմավորեցին ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագիրը, որի իրագործումը ընդմիշտ կվերացներ պատերազմները մարդկության կյանքից։ Սովետական Միությունը գերմանական հարցին տալիս է առաջնակարգ նշանակություն, քաջ գիտակցելով, որ դրա արդարացի լուծումից մեծ չափով կախված է խաղաղության բախտը Եվրոպայում և ամբողջ աշխարհում։

Անցել է ավելի քան քսան տարի երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբից և գրեթե տասնհինգ տարի նրա ավարտումից, բայց պատերազմի հետքերը դեռ չեն վերացված։ Գերմանիայի հետ հաշտության պայմանագիրը դեռ չի ստորագրված, Արևմտյան Բեռլինը դարձել է վտանգավոր կոնֆլիկտների հնարավոր թատերաբեմ, որից կարող է համաշխարհային հրդեհ բորբոքվել։ Սովետական կառավարությունը ելնելով միջազգային խաղաղության և անվտանգության շահերից, առաջարկում է հաշտության պայմանագիր ստորագրել գերմանական երկու պետությունների հետ, բոլոր օտարերկրյա զորքերը

հանել գերմանական տերիտորիայից և գերմանական ժողովրդին հնարավորություն տալ իր հայեցողությամբ լուծելու իր միավորման հարցը։ Արևմտյան Բեռլինը պետք է վերածվի ապառազմականացված ազատ քաղաքի։ Ստեղծված պայմաններում դա կլիներ գերմանական հարցի միակ տրամաբանական լուծումը։ Սակայն, որպես կանոն, գերմանական հարցի խաղաղ կարգավորման օգտին արվող առաջարկությունները Բոննի կառավարական շրջաններում այնպիսի ռեակցիա են առաջացնում, ինչպես կարմիր պաստառը ցուլի մոտ։ Ադենաուերի կառավարությունը կտրականապես մերժում է ինչպես Սովետական կառավարության, այնպես էլ ԳԴՌ-ի և սոցիալիստական մյուս երկրների խաղաղասիրական առաջարկները, բացեիբաց հայտարարելով ԳԴՌ-ն անեքսիայի ենթարկելու իր մտադրությունների մասին։ Ասպարեզից դեռ չեն հեռացել միլիտարիստական ուժերը, որոնք կցանկանային իրենց շահադիտական նպատակների համար մարդկությունը նետել նոր համաշխարհային պատերազմի բոցերի մեջ։ Արևմտյան տերությունները նպաստում են Արևմտյան Գերմանիայի սպառազինմանը։ Ինչպես ընկ. Ն. Ս. Խրուշչովն ասաց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում,— «Բոննում չեն հաշտվել անցած պատերազմում կրած պարտության հետ, այնտեղ կրկին նյութվում են նոր պատերազմ սանձազերծելու ոճրագործ պլաններ. այնտեղ դեռևս երազում են ռևանշի մասին, որ վերացնեն հիտլերյան Գերմանիայի ջախջախման հետևանքով աշխարհում տեղի ունեցած փոփոխությունները»։

Սակայն այդ ավանտյուրիստական քաղաքականությունը դատապարտված է ձախողման։ Սոցիալիզմը դարձել է համաշխարհային հզոր սիստեմ, որն ունի անհրաժեշտ բարոյական, տնտեսական և ռազմական հնարավորություններ և ընդունակ է խորտակիչ հարվածով պատասխանել ամեն մի ագրեսիայի։

Գաղութային լծից ազատագրված շատ երկրներ վարում են ռազմական բլոկներին չմասնակցելու և դրական չեզոքության քաղաքականություն։ Սոցիալիստական երկրների հետ միասին նրանք կազմում են «խաղաղության գոտին»։ Կապիտալիստական աշխարհում զգալի հասարակական ուժեր կան, որոնք, չնայած ոստիկանական տեռորին և հետապնդումներին, ակտիվորեն հանդես են գալիս խաղաղության օգտին՝ ընդդեմ պատերազմի։ Այդ ուժերը գլխավորում են բանվոր դասակարգը և նրա մարքսիստական-լենինյան պարտիաները։ Այդպիսին են խաղաղության ուժերն այսօր։ Ուժերի այդպիսի փոխհարաբերության պայմաններում պատերազմի սանձազերծումը կապիտալիզմի համար հավասարազոր կլիներ ինքնասպանության։

Ֆաշիստական Գերմանիայի պարտությունից 15 տարի հետո գերմանական հարցը դառնում է քննարկման առարկա Արևելքի և Արևմուտքի բարձր մակարդակի խորհրդակցությունում։ Առավել հեղինակավոր այդ հանդիպումից ժողովուրդներն ակնկալում են լուրջ տեղաշարժ միջազգային բոլոր վիճելի հարցերի, այդ թվում և գերմանական հարցի լուծման ասպարեզում։ Այժմ՝ բարձր մակարդակի խորհրդակցության նախօրյակին, ավելի քան պետք է խորհել պատմության դասերի մասին։ Գերմանական հարցը պետք է լուծել խաղաղասիրական և դեմոկրատական ճանապարհով, որն ընդմիշտ բացառեր գերմանական միլիտարիզմի և ռևանշիզմի վերածնունդը և թույլ չտար Գերմանիան վերածել նոր պատերազմի օջախի։ Այդ են թելադրում երկրորդ համաշխարհային պատերազմի դասերը։

---

# ՍՄԿՊ-Ի ՊԱՏՄԱԿԱՆ ԴԵՐԸ

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Սոցիալիստական ռևոլյուցիայի պատմական փորձը, սկսած 1871 թվականի Փարիզի կոմունայից մինչև մեր օրերը, հաստատ վկայությունն է այն բանի, որ պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման, սոցիալիստական հասարակության կառուցման վճռական պայմանը հանդիսանում է Կոմունիստական, մարքսիստական-լենինյան պարտիայի ղեկավարությունը։ Դա պրոլետարական ռևոլյուցիայի զարգացման օրինաչափությունն է, որը պարտադիր է սոցիալիզմի հունը մտած բոլոր երկրների համար։

Կոմունիստական պարտիան բանվոր դասակարգի կազմակերպության բարձրագույն ձևն է, աշխատավորության բոլոր կազմակերպությունների քաղաքական ղեկավարը։ Բանվորներին ու գյուղացիներին կազմակերպել և քաղաքականապես լուսավորել, նրանց ցույց տալ սոցիալիզմի և կոմունիզմի ուղին, աշխատավորներին հերոսական սխրագործությունների ոգեշնչել կարող է միայն ռևոլյուցիոն պարտիան։ Առանց կարգապահ և մոնոլիտ Կոմունիստական պարտիայի, ասում էր Լենինը, չի կարելի ո՛չ նվաճել և ո՛չ էլ իրագործել պրոլետարիատի դիկտատուրան, որ մարքսիստական պարտիայի ղեկավարությունը գլխավորն է դիկտատուրայի սիստեմում։ «...պրոլետարիատի դիկտատուրան,— ասում է Լենինը,— հնարավոր է միայն Կոմունիստական պարտիայի միջոցով և ոչ այլ կերպ» (Երկեր, հ. 32, էջ 242)։

Ընդ որում Լենինը մատնանշում էր, որ պրոլետարիատի դիկտատուրան ատամնավոր անիվների բարդ սիստեմ է, որն իրականացնել հնարավոր է միայն մի քանի «շարժափոկերի» օգնությամբ, որոնք ձգվում են պարտիայից դեպի բանվոր դասակարգը, նրանից՝ դեպի աշխատավորների մասսան։ Այդպիսի շարժափոկեր Լենինը համարում էր Սովետների պետական ապարատը, արհմիությունները, կանանց ու երիտասարդական միությունները և այլ կազմակերպություններ։ «Ստացվում է,— գրում է Լենինը,— ընդհանուր առմամբ և ամբողջությամբ ձևականորեն ոչ կոմունիստական, ճկուն և համեմատաբար լայն, շատ հզոր, պրոլետարական ապարատ, որի միջոցով պարտիան սերտորեն կապված է դասակարգի ու մասսայի հետ և որի միջոցով, պարտիայի ղեկավարությամբ իրագործվում է դասակարգի դիկտատուրան» (Երկեր, հ. 31, էջ 40)։

Միաժամանակ Լենինը խիստ զգուշացնում էր, որ պարտիան, նրա կազմակերպությունները չպետք է փոխարինեն պետական և հասարակական-մասսայական կազմակերպություններին։

Ի՞նչ է նշանակում, թե պարտիան որպես կառավարող ավանգարդ իրագործում է պրոլետարիատի դիկտատուրան։ Դա նշանակում է, որ իր ղեկավար, ուղղություն տվող դերը պարտիան իրականացնում է բանվոր դասակարգի և աշխատավորության մյուս խավերի մասսայական կազմակերպությունների, սովետական ապարատի միջոցով։ Պարտիան պետական-հասարակական կազմակերպությունների ղեկավարությունը իրագործում է այդ կազմակերպություններում աշխատող և նրանց ղեկավարող օրգանների մեջ մտնող իր անդամների միջոցով։ Ահա թե ինչու Լենինն ասում էր. «Դիկտատուրան իրականացնում է Սովետների մեջ կազմակերպված պրոլետարիատը, որին ղեկավարում է բոլշևիկների կոմունիստական պարտիան...» (Երկեր, հ. 31, էջ 38), և որ պարտիան «...իր մեջ է առնում պրոլետարիատի ավանգարդին, և այդ ավանգարդն իրականացնում է պրոլետարիատի դիկտատուրան։ Եվ, չունենալով այնպիսի հիմք, ինչպես պրոֆմիություններն են, չի կարելի իրականացնել դիկտատուրա, չի կարելի կատարել պետական ֆունկցիաներ» (Երկեր, հ. 32, էջ 3)։

ՍՍՌՄ-ի, սոցիալիստական երկրների բազմաբովանդակ պրակտիկան ամբողջովին հաստատում է պարտիական շինարարության լենինյան դրույթները։ Բանվոր դասակարգի դիկտատուրայի ավելի քան 42-ամյա պատմության գլխավոր փորձն այն է, որ պրոլետարական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության գործը չի կարող հաջողությամբ պսակվել առանց Կոմունիստական պարտիայի, որն իր սեփական ու պրակտիկ գործունեության մեջ ղեկավարվում է մարքսիստական-լենինյան ուսմունքով, կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա, սերտորեն կապված է մասսաների հետ, ձգտում է լինել աշխատավորների և նրանց իշխանության ղեկավար միջուկը, դաստիարակում է իր անդամներին և ժողովրդական լայն մասսաներին մարքսիզմ-լենինիզմի կենարար գաղափարների ոգով։ Պարտիան, որը բանվոր դասակարգի մյուս բոլոր կազմակերպությունների համեմատությամբ ունի քաղաքական և կազմակերպական առավել հարուստ փորձ, հանդիսանում է սոցիալիստական պետության և սոցիալիստական շինարարության ղեկավարը։

Պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում պարտիայի ղեկավար դերի դրսևորման արտահայտությունն է այն փաստը, որ ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում պետական և հասարակական կազմակերպությունների կողմից ոչ մի կարևոր քաղաքական կամ կազմակերպական հարց չի լուծվում առանց պարտիայի ղեկավար ցուցումների։

Մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցումն ապահովող բոլոր որոշումներն ու միջոցառումները ծնունդ են առել պարտիայի համագումարներում, կոնֆերենցիաներում, պլենումներում՝ որպես պարտիայի ղեկավար ցուցումներ, որից հետո դրանք պետական օրենքի ուժ են ստացել և կենսագործվել կյանքում։

Իշխանության գլուխ անցնելով՝ Կոմունիստական պարտիան հին կարգերի հեղաշրջման պարտիայից դարձավ նոր կյանքի կառուցման ղեկավար ու ուղղություն տվող ուժ։ Սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի շինարարությունը դարձավ լենինյան պարտիայի գլխավոր խնդիրը, նրա քաղաքականության հիմնական բովանդակությունը։ ՍՄԿՊ համագումարներում ու կոն-



ֆերենցիաներում, Կենտկոմի պլենումներում ու նիստերում քննարկվում էին էկոնոմիկայի, կուլտուրայի, կադրերի պատրաստման, Հայրենիքի պաշտպանության հարցերը։ Իրագործելով երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունը, պարտիան հասավ սոցիալիզմի լիակատար և վերջնական կառուցմանը, ապահովելով Սովետական Միության համաշխարհային պատմական հաղթանակը ֆաշիզմի դեմ մղված Հայրենական Մեծ պատերազմում։

Աշխարհում առաջին սոցիալիստական հասարակության կառուցումը մեր երկրում, մանավանդ թշնամական կապիտալիստական շրջապատման պայմաններում, անասելի դժվարին գործ էր. սակայն պարտիայի ղեկավարությամբ այն ընթանում էր հաջող, քանի որ պարտիան զինված է հասարակության զարգացման օբյեկտիվ տնտեսական օրենքների իմացությամբ, իսկ սովետական կարգի հաղթանակը պարտիային անսպառ հնարավորություն տվեց այդ օրենքները գիտակցականորեն և նպատակասլաց օգտագործել հօգուտ ամբողջ հասարակության։

Սոցիալիզմի հաղթանակով և սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության ամրապնդմամբ Կոմունիստական պարտիան դարձավ ամբողջ սովետական ժողովրդի արմատական շահերի արտահայտիչը, առաջնորդը, կազմակերպիչը և դաստիարակը։ Այդ իմաստով նա դադարեց միայն բանվոր դասակարգի կազմակերպությունը լինելուց և, ինչպես արձանագրված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայում, դարձավ մեր երկրի բոլոր աշխատավորների պարտիան։

Վ. Ի. Լենինը ուսուցանում է, որ պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերը գնալով կաճի ընդհուպ մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Կոմունիզմը ժողովրդական բազմամիլիոն զանգվածների գիտակցական և պլանաչափ ստեղծագործության արգասիքն է, մարդկանց միանգամայն նոր հասարակական հարաբերությունների ստեղծումը։ Կոմունիստական շինարարության ընթացքում պարտիայի ղեկավար դերն աճում է, որովհետև ավելի ու ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում սուբյեկտիվ գործոնը, հասարակության գիտակցական ղեկավարումը, որովհետև հասարակությունն իր ձեռքն է վերցնում տնտեսական պրոցեսների կառավարումը, որոնք կապիտալիզմի ժամանակ ընթանում էին տարերայնորեն։ Պարտիայի դերն աճում է նաև այն պատճառով, որ ժողովրդական ավելի ու ավելի լայն մասսաներ են ներգրավվում նոր հասարակության կառուցման մեջ։ Կոմունիզմը, ինչպես և սոցիալիզմը «...կառուցվել կարող է միայն այն ժամանակ,— ասում է Լենինը,— երբ 10 և 100 անգամ ավելի լայն մասսաներ, քան առաջ, իրենք կսկսեն պետություն կառուցել և տնտեսական նոր կյանք կառուցել» (Երկեր, հ. 23, էջ 523)։ Իսկ որքան խոր ու բազմաբովանդակ է նոր կյանքի շինարարության թափը, այնքան ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում պարտիայի կողմից մասսաների ղեկավարումը, որը հանդես է գալիս որպես աշխատավորների ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության կազմակերպիչ։ Պարտիայի դերի աճումը կապված է նաև այն բանի հետ, որ սոցիալիզմը կոմունիզմի վերաճելուն զուգընթաց, աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի աճման, նրանց գիտակցականության բարձրացման զուգընթաց հետզհետե նեղանում է հարկադրանքի ու վարչական ներ-

գործության միջոցների կիրառման ոլորտը և մեծանում է համոզելու, գաղափարական ներգործության նշանակությունը։

Ժամանակակից պայմաններում պարտիայի դերի հետագա աճման անհրաժեշտությունը բխում է այն փաստից, որ ՍՍՌՄ-ը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Զարգացման նոր փուլում ավելի բարձր մակարդակի կհասնեն արտադրողական ուժերը և արտադրահարաբերությունները, հասարակության քաղաքական կազմակերպությունը, հասարակական գիտակցությունը, որակական խոր փոփոխություններ կկատարվեն կյանքի բոլոր ոլորտներում։ Եվ այդ օրինաչափորեն պահանջում է պարտիայի ղեկավար գործունեության նոր, ավելի բարձր մակարդակ, նրա քաղաքական, կազմակերպչական, տնտեսական և գաղափարական աշխատանքի բուռն ծավալում, որը լիովին համապատասխանի կոմունիստական հասարակության բարձր փուլին անցնելու համաշխարհային պատմական խնդիրներին։ «Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար պայքարի ամբողջ փորձը ցույց է տալիս,— նշվում է ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներում,— որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում պարտիայի՝ որպես ժողովրդի փորձված ավանգարդի և հասարակական կազմակերպության բարձրագույն ձևի, դերը ավելի ու ավելի է աճում»։

Կոմունիստական շինարարության ներկա էտապում, ավելի քան երբեք, աճում է պարտիայի ղեկավար և կազմակերպչական դերը երկրի տնտեսական կյանքում։ Այժմ ՍՄԿՊ-ն իր հիմնական ջանքերն ուղղում է կոմունիզմի կառուցման տնտեսական պրոբլեմների լուծման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի և աշխատանքի ամենաբարձր արտադրողականության ստեղծման նպատակին։ Զինված սոցիալիզմի տնտեսական օրենքների խոր իմացությամբ՝ պարտիան մշակում է պետական պլանները, որոշում կոմունիզմի կառուցման գլխավոր հարցերը և դրանց լուծման ուղիները, անդադրում կատարելագործում է մեր առաջխաղացման ձևերն ու մեթոդները։

Կոմունիստական պարտիայի կողմից վերջին տարիներս իրագործված այնպիսի ռևոլյուցիոն, տնտեսական-քաղաքական խոշոր միջոցառումներ, ինչպիսիք են՝ արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, տնտեսական վարչական շրջաններում ժողտնտխորհների ստեղծումը, միութենական ռեսպուբլիկաների և տեղական օրգանների իրավունքների ընդլայնումը, պլանավորման նոր կարգի կիրառումը, քիմիական արդյունաբերության, տեխնիկական առաջադիմության բուռն զարգացման ծավալուն ծրագրերի մշակումը, ՄՏԿ-ների վերակազմումը և կոլտնտեսային կարգի հետագա զարգացումը, խամ ու խոպան հողերի յուրացումը, գյուղատնտեսական մթերքների միասնական գների սահմանումը, հանրային տնտեսության զարգացման գործում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը, կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդումը և այլն Կոմունիստական պարտիայի անընդհատ աճող ղեկավար դերի փայլուն վկայությունն են կոմունիզմի շինարարության բոլոր բնագավառներում։

Որքան տնտեսական շինարարության մեջ բարձր լինի պարտիական ղեկավարության գիտական-քաղաքական և կազմակերպչական մակարդակը, որքան հասարակական արտադրության մեջ ավելի մեծանա աշխատավոր մասսաների ակտիվությունը, գիտակցականությունը և կազմակերպվածությունը,



այնքան ավելի էֆեկտիվ, անխափան կգործի կոմունիստական հասարակության տնտեսական մեխանիզմը։ Իրականացնելով գյուղատնտեսության, արդյունաբերության և շինարարության ղեկավարման խոր վերակառուցում՝ պարտիան նպատակ ունի շեշտակիորեն բարձրացնել տնտեսվարության ընդհանուր մակարդակը, հետևողականորեն մշակել տնտեսվարման այնպիսի արմատական ձևեր ու մեթոդներ, որոնք առավելագույն չափով համապատասխանեն կոմունիստական շինարարության նոր պայմաններին ու հասունացած պահանջներին, նպաստեն արտադրության զարգացումն արագացնող տնտեսական ու բարոյական գործոնների արմատավորմանը։

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների պատմական որոշումները՝ մեր երկիրը իրոք նոր, հսկայական առաջընթաց քայլ կատարեց էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի զարգացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, միջազգային լարվածության թուլացման և ընդհանուր խաղաղությունն ամրապնդելու ուղղությամբ։ Յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի պլանների կատարման արդյունքները գերազանցեցին նախօրոք պլանով սահմանված համարձակ կանխագծումները։ 1959 թվականին արդյունաբերական արտադրությունը 1958 թվականի մակարդակը գերազանցեց 11 տոկոսով, նախատեսված 7,7 տոկոսի փոխարեն։ Երկիրը ստացավ գրեթե 50 միլիարդ ռուբլու արտապլանային արտադրանք։ Վիթխարի են նաև գյուղատնտեսության նվաճումները։ 1959 թվականին հավաքվեց 7,6 միլիարդ փութ հացահատիկ, 4,7 միլիոն տոննա բամբակ (երկրի բամբակագործության ողջ պատմության մեջ ռեկորդային բերք)։ Այժմ ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ին գերազանցում է ցորենի արտադրության ծավալով 2 անգամ, շաքարի ճակնդեղի արտադրությամբ՝ մոտ 3 անգամ։ Յուղի և կաթի արտադրությամբ ՍՍՌՄ-ն արդեն անցել է ԱՄՆ-ից և այժմ աշխարհում գրավում է առաջին տեղը։ Ժողովրդական կրթության և կուլտուրայի մակարդակով Սովետական Միությունը վաղուց հետևում է թողել առավել զարգացած կապիտալիստական երկրներին։ Ներկայումս ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված են 54 միլիոն մարդ։ Մեր երկրի բուհերը 3 անգամ ավելի ինժեներներ են պատրաստում, քան ԱՄՆ-ում։ Ատոմային էներգիայի խաղաղ օգտագործումը, երկրի սովետական արհեստական արբանյակները, հզոր հրթիռների արձակումը և այլն բովանդակ աշխարհին ապացուցում են, որ մեր Հայրենիքը վստահորեն գլխավորում է մեր ժամանակի գիտա-տեխնիկական առաջընթացը։



Լենինիզմն ուսուցանում է, որ սոցիալիստական պետության սիստեմում Կոմունիստական պարտիայի ղեկավար գործունեությունը չի սպառվում քաղաքական գծի մշակումով։ Պարտիայի գլխավոր գիծը մշակելուց հետո գործի հաջողությունը վճռում է կազմակերպական աշխատանքը, որը կոմունիզմի կառուցման նոր փուլում առանձնահատուկ նշանակություն է ստացել։ Կոմունիստական շինարարության հասունացած խնդիրները մշակելիս և լուծելիս պարտիան դիմում է ժողովրդի ստեղծարար եռանդի անսպառ ակունքին, մշտապես խորհրդակցում է բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգեն-

ցիայի հետ, հենվում նրանց փորձի ու գիտելիքների վրա, խորապես ունկնդրում նրանց առաջարկություններն ու քննադատական դիտողությունները։ Պարտիայի պրակտիկայում սիստեմ է դարձել պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության կարևոր միջոցառումները համաժողովրդական քննարկման ներկայացնելը, երկրի կյանքի հրատապ պրոբլեմների վերաբերյալ աշխատավորներին ուղղվող դիմումները։

Պարտիայի ու ժողովրդի միջև հաստատվել են խոր ու փոխադարձ վստահության կապեր։ Կոմունիստական պարտիայի ուժն ու անպարտելիությունը նրանումն է, որ նա անքակտելի կերպով կապված է ժողովրդի հետ։ Պարտիայի ու ժողովրդի միասնությունը, ժողովրդի բարօրության մասին անսահման հոգատարությունը պարտիայի ամբողջ գործունեության բարձրագույն օրենքն է։ Պարտիայի քաղաքականության մեջ, այն ամենի մեջ, ինչ պարտիան նախատեսում և կիրառում է, սովետական մարդիկ տեսնում են իրենց ձգտումների, կենսական շահերի արտահայտությունը։ Պարտիայի քաղաքականության մասին ժողովուրդն ասում է. մեր քաղաքականությունն է, պարտիայի պլանները — ամբողջ ժողովրդի պլաններն են։ Սովետական ժողովուրդը քաջ գիտակցում է, որ պարտիայի գործը մեր երկրում վաղուց ի վեր ամբողջ ժողովրդի գործն է։ Ճիշտ արտահայտել այն, ինչ որ մտածում ու գիտակցում է ժողովուրդը. սա լենինյան այն անհրաժեշտ պայմանն է, որը պարտիայի համար ապահովում է ղեկավար ուժի մշտական պատվավոր դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում։

Կոմունիստական ծավալուն շինարարության ժամանակաշրջանում պետք է գործնականորեն լուծվի ապագայի համակողմանիորեն զարգացած ու կրթված մարդու դաստիարակության խնդիրը։ Այդ կապակցությամբ բացառիկ կարևոր նշանակություն է ստանում պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, որը դառնում է յոթնամյա պլանի և ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման ամբողջ ծրագրի իրագործման վճռական գործոններից մեկը, բնավորության կոմունիստական գծերով ու բարոյականությամբ օժտված նոր մարդու ձևավորման, մարդկանց գիտակցությունից կապիտալիզմի մնացուկների վերացման և բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի հզոր միջոցը։

ՍՄԿՊ XXI համագումարի, «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» պարտիայի Կենտկոմի հունվարի 9-ի ծրագրային որոշումների մեջ նշվում է, որ իդեոլոգիական աշխատանքի խնդիրն է աշխատավորներին ու մատաղ սերնդին դաստիարակել կոլեկտիվիզմի ու աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, կոմունիստական հասարակության բարոյականության վսեմ զգացմունքների ոգով։ Այդ ամենը պետք է զարդարեն կոմունիզմ կառուցող ամբողջ սովետական ժողովրդին։ Պարտիան պահանջում է ապահովել գաղափարական աշխատանքի ամենասերտ կապը գործնական խնդիրների լուծման հետ, կոնկրետություն ու նպատակասլացություն դաստիարակչական աշխատանքում, ամեն կերպ պաշտպանել և զարգացնել աշխատանքի կոմունիստական ձևերը, հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդ ավելի լավ օգտագործի մեքենան, հաստոցը, տրակտորը, կոմբայնը, կիրառի աշխատանքի առաջավոր մեթոդներ։ Պարտիան ուսուցանում է, որ միայն գործնական խնդիրների լուծման համար մղվող պայքարում կարելի է դաստիարակել ապագայի մարդուն։



Իր քաղաքական, կազմակերպական և գաղափարական ղեկավարությունը պարտիան իրականացնում է պետական և հասարակական կազմակերպությունների միջոցով, որոնց գործունեության ոլորտը դեպի կոմունիզմ շարժման զուգընթաց ավելի է ընդլայնվում, ուժեղանում է նրանց ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Ուստի պետական ու հասարակական կազմակերպությունների ամրապնդումը, նրանց ֆունկցիաների, իրավունքների ընդլայնումն ու դերի բարձրացումը պարտիան համարում է իր անդուլ հոգատարության առարկան և վերջին տարիներս շատ բան է արել այդ ուղղությամբ։

Սոցիալիստական հասարակարգի ներկա էտապում է՛լ ավելի է աճում աշխատավորների դեպուտատների Սովետների՝ ժողովրդական մասսաների այդ խոշոր համապարփակ դեմոկրատական կազմակերպությունների դերը։ Սովետական օրգանները որքան ավելի շատ հենվեն մասսաների ակտիվության վրա, հասնեն սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման, վճռականորեն վերջ տան քաշքշուկի և բյուրոկրատիզմի տարրերին, այնքան ավելի բեղմնավոր կլինի այդ օրգանների աշխատանքը։

Մեծ չափով աճել է արհմիությունների, կոմերիտմիության, գիտական և ստեղծագործական կամավոր միությունների և հասարակական այլ կազմակերպությունների դերն ու նշանակությունը, նրանց կազմակերպական ու դաստիարակչական գործունեությունը կոմունիզմի հոյակապ խնդիրները լուծելու ուղղությամբ տասնյակ ու տասնյակ միլիոնավոր աշխատավորներին մոբիլիզացնելու գործում։ Հասարակական կազմակերպությունները մասսաների կոմունիստական դաստիարակության, համոզման, նրանց ակտիվության ու ինքնագործունեության բարձրացման մեթոդներով լուծում են պետական-քաղաքական, տնտեսական-կուլտուրական մեծ խնդիրներ։ Պրոլետարիատի դիկտատուրայի մեխանիզմի բոլոր օղակներն օրգանապես կապված են մեկը մյուսի հետ և իրենց միասնությունը գտնում են Կոմունիստական պարտիայի ղեկավարության մեջ։ Պարտիան, որպես սովետական ժողովրդի ամենակազմակերպված և ամենագիտակից ջոկատը, համախմբում, կոորդինացնում, քաղաքական ճիշտ ուղղություն է տալիս հասարակական բոլոր կազմակերպությունների գործունեությանը, նրանց աշխատանքը նպատակամղում է կոմունիզմի կառուցման խնդիրների ուղղությամբ։

Սովետական Միության կոմունիստական պարտիան հետևողականորեն, հասունացած նոր պայմանների ճիշտ հաշվառումով վարում է այնպիսի գիծ, որը տանում է դեպի քաղաքական կազմակերպության ու կառավարման այն սիստեմի ստեղծումը, որից աստիճանաբար կաճի ապագա կոմունիստական հասարակության հանրային ինքնավարությունը։ Արդեն այժմ պետական օրգանների մի շարք ֆունկցիաներ, այդ թվում բնակչության կուլտուրական սպասարկման, առողջապահության և ֆիզկուլտուրայի հարցերը անցնում են և առաջիկայում ավելի շատ ֆունկցիաներ կանցնեն հասարակական կազմակերպությունների տնօրինությանը։ Գնալով ավելի է աճում հասարակայնության դերը կյանքի բոլոր բնագավառներում։ Ժողովրդական կամավոր դրուժինաները, ընկերական դատարանները և հասարակական այլ ինքնագործ

օրգաններ պետական հիմնարկների հետ միասին հաջողությամբ կատարում են հասարակական կարգի և քաղաքացիների իրավունքների պահպանության ֆունկցիաները։ Կոմունիզմի շինարարության մեջ սովետական մարդկանց ինքնագործունեության ու ակտիվության բուռն ծավալման վառ օրինակ է այն փաստը, որ մեր ռեսպուբլիկայում այժմ գործում են ավելի քան 21 հազար դրուժիննիկներ, որոնք շնորհակալ գործ են կատարում հակահասարակական երևույթների վերացման, հանցագործությունների կանխման, սոցիալիստական համակեցության նորմանները պահպանելու ուղղությամբ։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, հասարակայնության և իշխանության տեղական օրգանների դերի բարձրացման նպատակով վերջերս վերացվեց ՍՍՌՄ Ներքին Գործերի մինիստրությունը։

Մեր երկրի կյանքում տեղի ունեցող բոլոր այդ պրոցեսները՝ հասարակայնության դերի աճումը, հարկադրանքի ոլորտի նեղացումը և դրան համապատասխան պետական ապարատի կրճատումը, առանձին ֆունկցիաների անցումը հասարակական կազմակերպություններին, տանում են դեպի սոցիալիստական պետականության աստիճանական մահացում։ Պետությունը կմահանա լիակատար կոմունիզմի ժամանակ։ Ի հակադրություն սոցիալիզմի ժամանակ պետության մահացման ռևիզիոնիստական-օպորտունիստական բարբաջանքների, պարտիան ընդգծում է, որ բանվոր դասակարգի պետությունը (դիկտատուրան) պատմական արենայից կանհետանա այն ժամանակ, երբ կկառուցվի լիակատար կոմունիզմ, իսկ մինչ այդ այն ոչ միայն կպահպանվի, այլև ավելի կամրապնդվի։ Զարգացման ներկա էտապում պետական օրգանների առանձին ֆունկցիաների անցումը հասարակական կազմակերպություններին՝ սոցիալիստական պետության դերի հետագա ուժեղացումն է կոմունիզմի կառուցման գործում։ Դա պետական օրգաններն ավելի է մերձեցնում հասարակական կազմակերպություններին, ապահովում է աշխատավորների լայն մասսաների անմիջական մասնակցությունը պետական ֆունկցիաների կատարմանը, ընդլայնում և ամրապնդում է սոցիալիստական հասարակության քաղաքական հիմքը, ապահովում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը։ Դրա շնորհիվ Սովետական պետությունը կկարողանա է՛լ ավելի մեծ ուշադրություն բևեռել տնտեսական-կազմակերպչական ֆունկցիայի զարգացմանը, աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ վերահսկողության, հանրային սեփականության պահպանման ֆունկցիաներին, սոցիալիստական լագերի երկրների հետ համագործակցությունը կազմակերպելու ֆունկցիայի հետագա զարգացմանը։

Սոցիալիստական պետության կարևորագույն ֆունկցիան են խաղաղության պահպանությունն ու երկրի պաշտպանության ապահովումը։ Ինչպես ընդգծեց ՍՄԿՊ XXI համագումարը, Սովետական պետության կողմից իրականացվող Սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության ֆունկցիան կմահանա միայն այն ժամանակ, երբ ամբողջապես կվերանա իմպերիալիստների կողմից ռազմական հարձակման սպառնալիքը։



Լենինյան այն դրույթը, որ Կոմունիստական պարտիայի ղեկավարությունը գլխավորն է պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում, բռնել է մեր դարաշրջանի մեծագույն քննությունը։ Կոմունիստական հասարակարգի շինարա-



րության գործում պարտիայի ղեկավար դերը ժխտելու կամ նսեմացնելու վերաբերյալ ռևիզիոնիստների բոլոր պնդումները հերքվեցին և ջախջախվեցին։

Ժամանակակից ռևիզիոնիստները մարքսիստական-լենինյան պարտիային հատկացնում են միայն գաղափարական-լուսավորչական դեր։ Նրանք ջանում են ապացուցել, որ պրոլետարիատի կողմից պետական իշխանությունը նվաճելուց հետո պարտիայի քաղաքական-տնտեսական ղեկավարությունը կորցնում է իր նշանակությունը, որպես թե նա դառնում է մասսաների ստեղծագործական ակտիվության ծավալման և դեմոկրատիայի զարգացման մեծ խոչընդոտ։ Ռևիզիոնիստների այն պնդումը, որ սոցիալիզմի կառուցման գործում պարտիան պետք է դադարի «իշխանության գործոն» լինելուց և միայն կատարի գաղափարական-դաստիարակչական աշխատանք, ըստ էության պարտիայի՝ որպես սոցիալիզմի համար մղվող պայքարի ղեկավար ուժի լենինյան ուսմունքի ժխտումն է։ Պարտիայի ղեկավարող դերը որակելով որպես վնասակար «մոնոպոլիզմ», ռևիզիոնիստները նրան հակադրում են ուրիշ կազմակերպություններ, բանվորական խորհուրդներ և այլն։ Իսկ ի՞նչ է նշանակում առաջին տեղը մղել անպարտիական կազմակերպությունները և նվազեցնել մարքսիստական պարտիայի դերը։ Այդ նշանակում է՝ գլորվել անարխո-սինդիկալիզմի դիրքերը, դեմագոգիկ ձևով հարմարվել աշխատավորների ավելի քիչ գիտակից խավերին և նսեմացնել բանվոր դասակարգի ավանգարդի նշանակությունը։ «Իսկ դա հավասարազոր է պրոլետարիատի լիակատար զինաթափմանը հօգուտ բուրժուազիայի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 34)։ Նման պրակտիկան ու տեսությունը անխուսափելիորեն կկործանեն պրոլետարական ռևոլյուցիայի, սոցիալիզմի ու կոմունիզմի գործը, եթե այն խրախուսվի, դառնա գործողության ուղեցույց։

ՍՄԿՊ-ի գործունեությունը, որն ուղղված է Սովետական պետության տնտեսական հզորության ամրապնդմանը, կուլտուրայի ծաղկմանը, ժողովրդի բարեկեցության անշեղ աճին, դեմոկրատիայի զարգացմանը, բանվորների ու գյուղացիների դաշինքի և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման նպատակին, ռևիզիոնիստները արհամարհանքով անվանում են «պրակտիցիզմ»։ Տեսության հարցերը, ասում են նրանք, ՍՄԿՊ-ն մոռացության է տալիս։ Սա ուղղակի նենգ հերյուրանք է լենինյան պարտիայի հասցեին։ Հեռու լինելով մարքսիզմից՝ ռևիզիոնիստները չեն հասկանում, որ Կոմունիստական պարտիայի մշակած և կենսագործվող բոլոր միջոցառումներն ունեն ոչ միայն գործնական, այլև տեսական մեծ նշանակություն։ Համարձակորեն լուծելով կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները՝ պարտիան միշտ էլ հարստացրել է մարքսիզմ-լենինիզմը։

ՍՄԿՊ XX և XXI համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումները, ընկեր Խրուշչովի զեկուցումներն ու ելույթները, որոնցում մշակված է մեր երկրում կոմունիզմի կառուցման ծրագիրը, մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման կոնկրետ օրինակ են։ Պարտիան համակողմանիորեն ու խորապես մշակել է սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու, կոմունիստական հասարակության նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունների, հասարակական տարբեր կառուցվածքով պետությունների խաղաղ գոյակցության հարցերը։ ՍՄԿՊ-ն նոր

ձևով դրեց խաղաղության և պատերազմի պրոբլեմները արդի պայմաններում:

Կոմունիստական պարտիայի մոնոլիտ միասնությունն ու երկաթե կարգապահությունը պրոլետարիատի դիկտատուրայի ամրության, սոցիալիզմի ու կոմունիզմի հաջող կառուցման հիմնական պայմանն են: Պարտիայի X համագումարը, որը տեղի ունեցավ Լենինի անմիջական ղեկավարությամբ, առանձնահատուկ ուժով ընդգծեց պարտիական շարքերի միասնության պաշտպանության անհրաժեշտությունը և ընդունեց «Պարտիայի միասնության մասին» լենինյան բանաձևը, որն այսօր էլ ղեկավար ուղեցույց է ՍՄԿՊ-ի և միջազգային կոմունիստական շարժման համար: Պարտիական շարքերի միասնությունը վճռական ներգործություն է ունենում ոչ միայն պարտիայի համերաշխ և ներդաշնակ աշխատանքի, այլև պարտիայի ղեկավարությամբ գործող աշխատավորների բոլոր մասսայական կազմակերպությունների գործունեության վրա: Անողոքաբար պայքարելով տրոցկիստների, բուխարինականների, բուրժուական նացիոնալիստների և հակապարտիական այլ տարրերի դեմ, որոնք ձգտում էին խախտել պարտիայի ղեկավար դերը Սովետական պետության մեջ, Լենինն ասում էր. «Ով թեկուզ չնչին չափով թուլացնում է պրոլետարիատի պարտիայի երկաթե կարգապահությունը (առանձնապես նրա դիկտատուրայի ժամանակ), նա փաստորեն օգնում է բուրժուազիային՝ ընդդեմ պրոլետարիատի» (Երկեր, հ. 31, էջ 36):

ՍՄԿՊ Կենտկոմի կողմից պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնումը, մարքսիզմ-լենինիզմին խորթ՝ անհատի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարումը, ներպարտիական դեմոկրատիայի հետագա բուռն զարգացումը է՛լ ավելի ամրապնդեցին պարտիայի միասնությունը, նրա շարքերի մարտունակությունը և լենինյան կոփվածքը:

Կոմունիստական պարտիայի միասնությունը, որ հիմնված է մարքսիզմ-լենինիզմի գաղափարական սկզբունքների վրա, եղել և մնում է սովետական կարգի ամրության գլխավոր պայմանը, սոցիալիստական հասարակության բարոյա-քաղաքական միասնության ցեմենտող ուժը, ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի երաշխիքը: Սովետական պետության 43-ամյա փորձը սովորեցնում է, որ «...առանց միասնական ու ժայռի պես միաձույլ պարտիայի, առանց հասարակական զարգացման օրենքների իմացությամբ զինված պարտիայի, առանց մարքսիզմ-լենինիզմի մեծ սկզբունքներին հավատարիմ պարտիայի, բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը, մեր ամբողջ ժողովուրդը չէին կարողանա նվաճել իշխանությունը, ջախջախել իրենց թշնամիներին, կառուցել սոցիալիստական հասարակարգ և հաջողությամբ իրագործել աստիճանական անցումը կոմունիզմին» (Ն. Ս. Խրուշչով):

Պարտիայի պատմական դերը՝ պրոլետարական դիկտատուրայի միջոցով կոմունիզմի լիակատար կառուցումն է:

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ՉԻ ԿԱՐՈՂ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԻՆԵԼ

Վ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Ամերիկյան հայտնի հրապարակախոս Հերբերտ Ապտեկերը աղբակույտ է անվանել «ժողովրդական կապիտալիզմը», նշելով, որ դրա գաղափարախոսները ցանկանում են որ այն «հաճելի բույր արձակի»:

Իրենց գոյությունը երկարաձգելու համար մեռնող դասակարգերի գաղափարախոսները հաճախ կեղծում են իրականությունը, գռեհկացնում և խեղաթյուրում ճշմարտությունը: Արդի բուրժուազիան ավելի համոզվելով, որ կապիտալիստական սիստեմը վարկաբեկվել է, և սոցիալիզմը մեծ ուժով դեպի իրեն է ձգում աշխատավոր մասսաներին, մեծ ջանքեր է թափում արդարացնելու կապիտալիզմը՝ գունազարդելով այն և անվանելով «ժողովրդական կապիտալիզմ»:

Բուրժուական հսկայական պրոպագանդիստական մեքենան՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը և այլն ծառայում են «ժողովրդական կապիտալիզմին»: Նույնիսկ ստեղծված է «ժողովրդական կապիտալիզմի» մի հատուկ շրջիկ ցուցահանդես, որը դյուրահավատ մարդկանց փորձում է համոզել նրա «իրական» և ոչ առասպելական գոյությունը: «Ժողովրդական կապիտալիզմի մեր սիստեմում,— սնապարծորեն ճամարտակում է ամերիկյան «Սատերդեյ իվնինգ պոստ» շաբաթաթերթը,— համարյա ամեն մարդ կապիտալիստ է»: «Ժողովրդական կապիտալիզմը,— գուշակում է ավստրիական բուրժուական «Էստերեյխիշե նեյե տագեսցեյտունգ» թերթը,— դա մի տնտեսական սիստեմ է, ուր չկան ոչ հարուստ, ոչ էլ աղքատ մարդիկ, և ամբողջ ժողովուրդը դասվում է միջին խավին»:

«ԱՄՆ-ը կապիտալիստների ազգ է,— թմբկահարում է «Ջեներալ մոտորս կորպորեյշն»-ը: ԱՄՆ-ում «համարյա թե յուրաքանչյուր քաղաքացի կապիտալիստ է»,— կրկնում է «Ջեներալ էլեկտրիկ կոմպանի»-ն: Եվ ԱՄՆ-ում կառավարող general-ներից միայն երրորդը՝ գեներալ Էյզենհաուերը, ստիպված էր խախտել ներդաշնակությունը: Պրեզիդենտ Էյզենհաուերն իր արտասանած ճառերից մեկում խոստովանեց, որ «Արտադրված յուրաքանչյուր թնդանոթ, ջրարկված յուրաքանչյուր ռազմանավ, ռակետային յուրաքանչյուր սարքավորում վերջիվերջո գողացված է նրանցից, ովքեր քաղցում են, ովքեր տկլոր են»:

Կապիտալիզմին պիտակներ փակցնելով են զբաղված ոչ միայն իրենք՝ մոնոպոլիստներն ու նրանց բացահայտորեն սպասարկող տարբեր գործիչները, այլև արհմիութենական պարագլուխները: Նրանցից մեկը՝ Ֆիլիպ Մերեյը, գրել է. «Իրականում Ամերիկայում դասակարգեր չկան... Մենք այստեղ բոլորս բանվորներ ենք: Եվ վերջին հաշվով ֆերմերների, արդյունաբերական բան-

վորների, բիզնեսմենների, ծառայողների և ինտելիգենցիայի շահերը համընկնում են»։

Այսպիսով, «ժողովրդական կապիտալի» մունետիկները բոլոր ջանքերը գործադրում են, չխորշելով ոչ կեղծիքից, ոչ նենգափոխումից և, արդեն քանիցս ապարդյուն, «հերքելու» մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կապիտալիզմի մասին՝ դրան հատուկ ճգնաժամերով, գործազրկությամբ, հարստության կուտակումով, աշխատավորների աղքատությամբ հանդերձ և «փորձել» այն դարձնել ինչ-որ նոր, «կլասիկ կապիտալիզմի» այդ արատներից զերծ «ժողովրդական կապիտալիզմ»։

Նույնիսկ բուրժուական շատ թե քիչ ողջամիտ գիտնականներն ու պետական գործիչներն ի վիճակի չեն թաքցնելու «ժողովրդական կապիտալիզմի» իսկական բնույթը։ Այսպես, «Ֆիլադելֆիա բյուլետին»-ի ֆինանսական բաժնի խմբագիր Ջ. Ա. Լեվինգսոնը, որը տնտեսական հարցերի վերաբերյալ հոդվածներով հանդես է գալիս մոտավորապես 60 թերթում, այն եզրակացությանն է հանգել, որ «...մեզ մոտ կան մասնակի ճշմարտություններ, որոնք կատարելապես սուտ են։ Ես խոսում եմ «ժողովրդական կապիտալիզմ» արտահայտության մասին»։

«Ժողովրդական կապիտալիզմի» թեորիան, նախ և առաջ չի փայլում իր նորությամբ, թեև նրա հայտնվելը համարում են նոր երևույթ, որպես արդյունք հին կապիտալիզմի փոխակերպման նորագույն կապիտալիզմի, որն իբր, նման չէ իր ծնողին։ Իրականում դա հին, բավականին մաշված հնոտի է, որ վերցված է ուրիշի, այն էլ տարբեր ուսերից։ Այդ հնոտին ուտիլ-հումքից տարբերող միակ հատկանիշը նրա վնասակարությունն ու բացարձակ անօգտակարությունն է ժողովրդի համար։

«Ժողովրդական կապիտալիզմի» թեորիան, ավելի ճիշտ, նրա կարևորագույն բաղկացուցիչ մասը՝ «դեմոկրատական կապիտալիզմը», ծագել է դեռևս 19-րդ դարի վերջերին և 20-րդ դարի սկզբին, նախ՝ Անգլիայում, իսկ այնուհետև մյուս կապիտալիստական երկրներում։

Մերկացնելով «դեմոկրատական կապիտալիզմի» արմատները, Վ. Ի. Լենինը 1899 թ. գրել է, որ «...բաժնետիրական ընկերություններն իրապես ծառայում են այն նպատակին, որպեսզի դյուրահավատ և ընչազուրկ մարդկանց սեփականազրկեն հօգուտ խոշոր կապիտալիստների և սպեկուլյանտների» (Երկեր, հ. 4, էջ 247)։

Չնայած իր ծննդյան պատմական վաղեմիությանը, «ժողովրդական կապիտալիզմ» հասկացությունը չկարողացավ ձեռք բերել քաղաքացիության իրավունք, որովհետև այն աղաղակող կերպով հակասում է իրականությանը, որովհետև այն նույնքան անիմաստ է, որքան և բարեհնչյուն։ Կապիտալիզմ և ժողովրդական—դրանք միմյանց փոխադարձաբար բացառող հասկացություններ են. նույն բանը կստացվի, եթե, ասենք՝ «տաք սառույց»։

## «ԿԱՊԻՏԱԼԻ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ»

Պրոֆեսոր Մարկես Նեդլերն իր «Ժողովրդական կապիտալիզմ» խորագիրը կրող գրքում, որը լույս է տեսել Նյու-Յորքում 1956 թ., գրում է. «Ակցիաներին տիրելու միջոցով ժողովուրդն իրականացնում է արտադրության միջոցների սեփականությունը»։



Այս պրոֆեսորի շարադրանքը ուշադրության արժանի է միայն նրանով, որ անթիվ անհամար նման ֆրազաբանությունների մեջ այն աչքի է զարնում իր պարզությամբ և սակավաբանությամբ։ Ըստ այդ «գիտնականի», «դեմոկրատական կապիտալի» բուն էությունն այն է, որ իբր թե արտադրության միջոցները դարձել են ժողովրդի սեփականությունը, աշխատավորները ձեռք բերելով կապիտալիստական ձեռնարկությունների ավելի շատ բաժնետոմսեր, որպես թե դարձել են «համասեփականատերեր», «կապիտալիստներ», թող սկզբում լինեն «կապիտալիստիկներ»։

Այս առակակերպ հորինվածքը հերքվում է նույնիսկ բուրժուական պաշտոնական վիճակագրությամբ։ 1952 թվականի հունիսին ԱՄՆ-ում հրապարակվեց Բրուկինգսի ինստիտուտի՝ մեծ բիզնեսի այդ ճանաչված հետազոտական կազմակերպության «Բաժնետոմսերի տիրապետությունը Միացյալ Նահանգներում» խորագիրը կրող զեկուցումը։ Զեկուցման մեջ մատնանշվում էր, որ 6490 հազար մարդ, կամ բոլոր չափահաս ամերիկացիների միայն 6 տոկոսից մի քիչ ավելին ունեն բաժնետոմսեր։

Զեկուցումից երևում է, որ որոշ քանակի բաժնետոմսեր ունեն սևագործ բանվորների միայն 0,2 տոկոսը, կիսավորակավորում ունեցող բանվորների 1,4 տոկոսը և որակյալ բանվորների ու վարպետների 4,4 տոկոսը։

Բացի դրանից, մշակող արդյունաբերության կորպորացիաների բաժնետոմսերի 57 տոկոսը իրենց ձեռքում են պահում բաժնետերերի 2,3 տոկոսը, ֆինանսական և ներդրված կապիտալների բոլոր բաժնետոմսերի 53 տոկոսը վերահսկվում է բաժնետերերի երեք տոկոսի կողմից, իսկ տրանսպորտի կապիտալի 56 տոկոսը տնօրինում են 1,5 տոկոս կազմող բաժնետերերը։ Վերջապես, կոմունալ սպասարկման ձեռնարկությունների (հեռախոս, գազ, էլեկտրականություն և այլն) բոլոր բաժնետոմսերի 46 տոկոսը բաժնետերերի մեկ տոկոսի սեփականությունն էր։

1957 թ. սպառողների ֆինանսների հետազոտման վերաբերյալ հաշվետվությունը, որ կատարել էր Ռեզերվային ֆեդերալ վարչությունը (Միչիգանի համալսարանի պլանային-հետազոտական բաժնի համագործակցությամբ), ցույց է տալիս, որ ԱՄՆ-ում ծախսումներ կատարող 56,1 միլիոն միավորից (ընտանիքներ և միայնակներ) 89 տոկոսը բաժնետոմսեր չունի. 4 տոկոսը ունի 2 հազար դոլարից պակաս բաժնետոմսեր, 2 տոկոսը՝ 2-ից մինչև 5 հազար դոլարի բաժնետոմսեր և ընտանիքների միայն 3 տոկոսն ունի 10 հազար դոլարի և ավելի բաժնետոմսեր։

Ամերիկյան պրոգրեսիվ տնտեսագետ Վիկտոր Պեռլոյի «Ֆինանսական մագնատների կայսրությունը» գրքում բերված են հետևյալ համոզիչ տվյալները։ «Բաժնետոմսեր ունեցողների թիվը 1955 թվականին 8,6 միլիոն մարդ էր, որը պակաս էր 1930 թվականի համեմատությամբ։ Կես միլիոն բանվորական ընտանիքներ ունեն բաժնետոմսեր, բայց այդ բաժնետոմսերի ընդհանուր արժեքը կազմում է երկրում եղած բոլոր բաժնետոմսերի մոտավորապես 0,2 տոկոսը։ Միևնույն ժամանակ միայն Դյուպոնների ընտանիքին պատկանում են 10 անգամ ավելի բաժնետոմսեր, քան միասին վերցրած երկրի բոլոր բանվորներին... իսկ բոլոր բավորների 97 տոկոսը չունի արտադրության միջոցների սեփականության նույնիսկ այդ սիմվոլիկ չափը»։ Ամերիկյան գիտնա-

կան Ռայտ Միլսի հաշվումներով երկրի բոլոր բանվորների 98,8 տոկոսը ընդհանրապես բաժնետոմսեր չունի։

Ջ. Մ. Բուդիշը իր «Ժողովրդական կապիտալիզմ» գրքույկում (որ նա գրել է ԱՄՆ-ում աշխատանքի պրոբլեմների հետազոտման Ասոցիացիայի համագործակցությամբ), բերում է նավթային արդյունաբերության լիդեր «Էսսո ստանդարտ օյլ կոմպանի»-ի օրինակը։ Ըստ թերթերի հաղորդագրության «Էսսոյի 27 հազար բանվոր-ծառայողներից 20 հազարն այժմ հանդիսանում են այդ կոմպանիայի բաժնետոմսերի տերեր։ Միջին հաշվով յուրաքանչյուրն ունի 95 բաժնետոմս»։

Եթե նույնիսկ դրան հավատանք, ապա ոչ մի հիմք չկա այն արտակարգ ոգևորության համար, որ դրսևորում են կապիտալիզմի ջատագովները։ 1957 թվականի դեկտեմբերի 31-ի տվյալներով «Էսսո ստանդարտ օյլ կոմպանի»-ի շրջանառության մեջ գտնվող բաժնետոմսերի թիվը կազմում էր 203488 հազար։ «Էսսոյի» բոլոր՝ 20 հազար բանվորներն ու ծառայողները միասին վերցրած ունեին մոտ մեկ միլիոն ինն հարյուր հազար բաժնետոմս, կամ բաժնետոմսերի ընդհանուր թվի մեկ տոկոսից պակաս։

Դրանից բացի, այնտեղ ասվում է, թե «միջին հաշվով յուրաքանչյուրն ունի 95 բաժնետոմս։ Չխորանալով մանրամասնությունների մեջ, հարկավոր է կրկին ուշադրություն դարձնել բուրժուական գիտնականների սիրած, բայց հիմքից արատավոր, «միջին ամերիկացի», «միջին բաժնետեր» և այլ վկայակոչումների վրա։ Եվ դա, իհարկե, պատահական չէ, որովհետև միջին թվերի հետևում հեշտությամբ կարելի է քողարկել աղաղակող փաստերը։ Օրինակ եթե 100 բաժնետերերից մեկը ունի 9005 բաժնետոմս, իսկ 99-ը միայն 5-ական բաժնետոմս, ապա միջին հաշվով յուրաքանչյուրն ունի 95 տոմս. կամ, Ռոքֆելլերը և իր խղճուկ գոյությունը քարշ տվող ամերիկացի գործազուրկը «միջին հաշվով» ունեն յուրաքանչյուրը 2-ական միլիարդ դոլար։

Եվ սա անվանում են «դեմոկրատական կապիտալիզմ»։ Պետք է կատարյալ երեսպաշտ լինել այս բոլորից հետո՝ խոսելու այն մասին, թե, այսպես կոչված՝ «ժողովրդական բաժնետոմսերի» օգնությամբ աշխատավորները Մորգանների, Ռոքֆելլերների, Դյուպոնների հետ միասին դարձել են արտադրության միջոցների սեփականատերեր, դարձել են համասեփականատերեր կապիտալիստական վիթխարի ձեռնարկություններում։ Փաստերը ցույց են տալիս, որ նույնիսկ Միացյալ Նահանգներում (էլ չխոսելով մյուս կապիտալիստական երկրների մասին) չնչին գումարի փոքրաքանակ բաժնետոմսեր ունի բանվորների աննշան փոքրամասնությունը։ Եվ դա պատահական չէ։ Աշխատավորների եկամուտն այնքան է, որ նրանք բաժնետոմսի մասին ամենևին էլ չեն մտածում։ Այդ մասին ստիպված է գրել նույնիսկ բուրժուական մամուլը։ «Ինչի է պետք ամենագեղեցիկ ժողովրդական բաժնետոմսը,— հավաստում է արևմտագերմանական ֆինանսական կապիտալի օրգան «Դեր ֆոլկսվիրտ» ժուռնալը,— եթե նրանք, ում համար հնարված է այն, չեն կարող գնել»։

ԱՄՆ-ում Կալիֆոռնիայի համալսարանին կից գոյություն ունի սոցիալական վիճակագրության հետազոտման մի հատուկ կոմիտե՝ Հելլերի կոմիտեն, որը երկար տարիներ շարունակ հաշվում է չորս անձից բաղկացած ընտանիքի համար տարեկան բյուջեն, ապրուստի մինիմումը։

«Հելլերի կոմիտեն» հաշվել է, որ 1957 թ. ամերիկյան բանվորի միջին



աշխատավարձը կազմել է 4226 դոլար, իսկ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության տվյալներով՝ 4472 դոլար, ապրուստի մինիմումը՝ 5832 դոլար։

Սրանից երևում է, որ ամերիկյան բանվորական ընտանիքի բյուջեն ոչ միայն ոչ մի խնայողություն թույլ չի տալիս, այլև մեծ դեֆիցիտ ունի։ Դրա մասին ցայտուն կերպով վկայում է Միացյալ Նահանգների բնակչության անընդհատ աճող պարտքը։ Հասկանալի է, որ պարտքերի օղակի մեջ գտնվող տասնյակ միլիոնավոր ամերիկացիներ չեն էլ մտածում բաժնետոմսերի մասին, եթե նույնիսկ դրանք կոչվում են «ժողովրդական»։ Այդ բանը չեն կարող չընդունել նաև կապիտալիստական երկրներում։ Արևմտագերմանական մի արհմիութենական ժուռնալ, անդրադառնալով նույն այդ հարցին, գրել է. «Բանից դուրս եկավ, որ ժողովրդական բաժնետոմսերն ամենևին էլ ժողովուրդը չի ձեռք բերել»։

Այժմ քննենք այն գաճաճ բաժնետերերին, որոնց ներկայացնում են որպես կապիտալիստներ։ Հիրավի այդպիսի՞ն են նրանք իրականում, տիրապետո՞ւմ են նրանք ձեռնարկություններին, կառավարո՞ւմ են արդյոք դրանք։ Իհարկե, ոչ։

Կապիտալիստական երկրներում ներկայումս խոշոր ձեռնարկությունների առավել տարածված ձևը հանդիսանում են բաժնետիրական ընկերությունները։ Բաժնետիրական ընկերություններում բարձրագույն օրգանը ընդհանուր ժողովն է, որն ընտրում է ձեռնարկության անմիջական ղեկավար մարմիններին։ Ժողովում բաժնետերերի ձայների թիվը որոշվում է նրանց ունեցած բաժնետոմսերի քանակով։ Այդ պատճառով էլ բաժնետիրական ձեռնարկությունների փաստական տերը խոշոր կապիտալիստներն են, որոնց ձեռքին է բաժնետոմսերի այսպես կոչված վերահսկող ծրարը, իսկ աննշան մարդիկ բացարձակապես ոչ մի ազդեցություն չունեն ձեռնարկության գործերի վրա։ Ձևականորեն վերահսկող ծրարը կազմում է բոլոր բաժնետոմսերի 51 տոկոսը, բայց իրականում, մեծաքանակ մանր բաժնետերերի առկայության պայմաններում, ֆինանսական տերերը այնպես են «կատարելագործել» իրենց տիրակալության ամբողջ սիստեմը, որ այժմ դրա համար բավական է ունենալ բաժնետոմսերի մեկ հինգերորդից մինչև մեկ տասներորդը, իսկ երբեմն նաև դրանց ավելի քիչ մասը։

Գերմանական արհմիությունների միավորման մեջ մտնող «Իգ Մետալլ» արհմիության նախագահ Օտտո Բրենները ճիշտ գնահատելով մանր բաժնետիրոջ դերը, հայտարարել է. «Կարելի է մաքուր խղճով ասել, որ բաժնետիրական ընկերություններում մանր բաժնետերերի կախյալ վիճակի մեջ ընկնելու պրոցեսի ուժեղացումը այնքան ակտիվորեն է տեղի ունենում, որքան ավելի է մանրատվում բաժնետիրական կապիտալը։ Ընդ որում ընդհանուր ժողովներին վատ են հաճախում, բայց դրանք դառնում են լավ խաղացվող կատակերգություններ։ Իրականությունը ցույց է տալիս, որ այն պնդումը թե խնայողություն կատարող աշխատանք ստացողներն ու մյուս մանր բաժնետերերը կարող են ինչ-որ ազդեցություն ունենալ ձեռնարկության գործունեության վրա, հանդիսանում է պատրանք, եթե ոչ ավելի վատ բան»։

Բայց, այնուամենայնիվ, մանր բաժնետերերը թերևս շատ թե քիչ նշանակալի տնտեսական օգուտներ են ստանում։ Իրականում դա էլ չկա։ Եկ վերադառնանք այնքան լավ ռեկլամված «Էսսո ստանդարտ օյլ կոմպանի»-ի ծրագրին, մի կոմպանիա, որտեղ 20 հազար բանվորներ ու ծառայողներ տիրապե-

տում են միջին հաշվով յուրաքանչյուրը 95 բաժնետոմսի։ Եվ ի՞նչ։ Այդ 95 բաժնետոմսերը տարեկան բերում են ընդամենը 200 դոլար եկամուտ։

Վ. Պեռլոն մատնանշում է, որ բանվորների թվին պատկանող միջին բաժնետիրոջ ստացած ամենամյա շահութաբաժնի չափը մոտավորապես հավասար է նրա երկշաբաթյա վաստակին, այսինքն՝ նրա աշխատանքից կապիտալիստի քամած շահույթի շատ չնչին մասին։

Իսկ ի՞նչ իրական նպատակներ է հետապնդում և ի՞նչ օգուտներ ունի բուրժուազիան, որ այդպես եռանդով պրոպագանդում ու պրակտիկորեն կենսագործում է «կապիտալի դեմոկրատացումը»։

«Կապիտալի դեմոկրատացման» կողմնակիցները հետապնդում են ինչպես սոցիալ-քաղաքական, այնպես էլ տնտեսական նպատակներ։ «Սոցիալական պարտնյորության» դեմագոգիան ունի իր նպատակը՝ արտոնյալ «բանվորական արիստոկրատիա» ստեղծելով պառակտել աշխատավորների շարքերը, սքողելով կապիտալիզմի հակամարտ հակասությունները, դրանք հաշտեցնել միմյանց հետ, հրաժարվել արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականություն հաստատելու համար մղվող պայքարից։

Ֆինանսական կապիտալի մագնատները ձեռք են բերում նաև տնտեսական օգուտներ։ Հաճախ ստիպողաբար պարտադրելով «ժողովրդական բաժնետոմսեր», կողոպտելով աշխատավորներին, նրանք դրամական միջոցները մոբիլիզացնում են իրենց շահերի համար։ Այսպիսով, ժողովրդական կոպեկները, կենտրոնանալով նրանց ձեռքում, դառնում են լրացուցիչ աղբյուր հենց բուն իսկ ժողովրդի շահագործման համար։ Բացի դրանից, բաժնետիրական կապիտալի մանրատումը հնարավորություն է ընձեռում վերահսկողություն սահմանել հասարակության ամբողջ գործունեության վրա։ Այնուհետև, արհեստականորեն ստեղծելով «շահերի ընդհանրություն», մագնատները ձգտում են բանվորներին ավելի ուժեղ շահագործելու միջոցով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

«Կապիտալի դեմոկրատացումը» խաբեություն է, որովհետև բնակչության հսկայական մեծամասնությունը բաժնետոմսեր չունի և ցածր եկամուտների պատճառով ունենալ չի էլ կարող։ Աշխատավորների աննշան փոքրամասնությունը, որը շատ քիչ բաժնետոմսեր ունի, ըստ էության չի հանդիսանում կապիտալիստական ձեռնարկությունների սեփականատեր կամ «համասեփականատեր», ստանում է չնչին եկամուտ ու ձեռնարկությունների կառավարմանը չի մասնակցում և չի էլ կարող մասնակցել։ Ինչպես սոցիալ-քաղաքական, նույնպես և տնտեսական օգուտներ ստանում է միայն բուրժուազիան։

## «ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ»

«Մեր երկրում եկամուտների վերին խմբերը սահում են... ցած,— գրում է «Նյու-Յորք պոստ»-ի հրատարակիչ Ս. Պարկերը,— եկամուտների ցածր խմբերը վեր են բարձրանում»։ «Թեև վիճակագրությունը ցույց է տալիս,— գրում է «Ամերիկա» ժուռնալը (1959, № 33, էջ 6),— որ դեռևս չի հաջողվել հասնել միանգամայն հավասարաչափ բաշխման, սակայն նախկինում գոյություն ունեցող ծայրահեղությունները զգալի չափով համահարթվել են»։

Մեզ թվում է, թե հարկ չկա ավելացնելու այդ հարցի առթիվ ասույթների



քանակը, որովհետև եղածն էլ բավական է «ժողովրդական կապիտալիզմի» մյուս բաղկացուցիչ մասը՝ «եկամուտների ռևոլյուցիան» բնորոշելու համար։ Դրա իմաստն այն է, թե հարուստներն աղքատանում են, իսկ աղքատները՝ հարստանում, թե նրանց բաժանող վիհը լցվում է, եկամուտները «հավասարվում են»։

Դե, ի՞նչ կա որ, դարձյալ դիմենք բուրժուական պաշտոնական վիճակագրությանը և տեսնենք, թե ինչ է ասում այն այս առթիվ։

Սպառողների ֆինանսական դրության վերաբերյալ Ռեզերվների ֆեդերալ վարչության 1956 թ. տեսության եզրակացության համաձայն, 1955 թ. 2 հազար դոլար պակաս եկամուտ ունեցող ընտանիքների բաժինը կազմում էր 23 տոկոս, այսինքն՝ մնում էր անփոփոխ։ Դա նշանակում է, որ ԱՄՆ-ում բոլոր ընտանիքների համարյա $1/4$-ի կենսամակարդակը այնպիսին էր, որ, ըստ ընդհանուր կարծիքի, համարվում է աղքատության մակարդակ։

Ռեզերվների ֆեդերալ վարչությունը Միչիգանի համալսարանի հետազոտական կենտրոնի հետ համատեղ ամեն տարի անց է կացնում սպառողների եկամուտների ու ծախսերի հետազոտում։ 27 միլիոն ընտանիքների, կամ բոլոր 54 միլիոն ընտանիքների կեսի եկամուտը 1955 թ. 3960 դոլարից պակաս էր։ 1955 թ. ընտանիքների $2/3$-ը (64 տոկոսը) ուներ 5 հազար դոլարից պակաս եկամուտ։ Մինչդեռ «Գելլերի բյուջեի» համեստ հաշիվներով պահանջվում է առնվազն 5465 դոլար։

Ամերիկյան աշխատավորների մի մեծ խմբի աղքատիկ դրությունը հարկադրված էր ընդունել ԱՄՆ-ի 1956 թ. պրեզիդենտական ընտրությունների թեկնածու Էդլայ Ստիվենսոնը։ Իր 1956 թ. սեպտեմբերի 3-ի ճառում նա ասաց. «Ներկայումս տասնչորս միլիոն ամերիկացիներ պատկանում են այն ընտանիքներին, որոնց եկամուտը տարեկան չի հասնում 1 հազար դոլարի»։

Այդպիսին է կապիտալիստական իրականության բևեռներից մեկը։ Մյուս բևեռում ԱՄՆ-ի ընտանիքների ընդամենը 6 տոկոսը տարեկան ստանում էր 10000 դոլար և ավելի, 2 տոկոսը՝ 15000 դոլար և ավելի։

Մեծ բիզնեսը փառաբանող ամերիկյան «Ֆորչուն» ժուռնալը հրապարակել է տեղեկություններ, ըստ որոնց երկրում կան 155 մարդ, որոնցից յուրաքանչյուրի հարստությունը գնահատվում է 50 միլիոն դոլար և ավելի։ Դա նշանակում է, որ նրանցից ամեն մեկն էլ ստանում է մեկ միլիոն դոլարից ոչ պակաս տարեկան եկամուտ։ Ժուռնալը բերում է 76 ամենահարուստ մարդկանց ցուցակը, որոնցից յուրաքանչյուրն ունի ավելի քան 75 միլիոն դոլար։

Վ. Պեռլոն տալիս է այն սեփականության մինիմալ գնահատականը, որը գտնվում է երեք գերհարուստ ընտանիքային խմբերի՝ Դյուպոնների, Մելոնների, Ռոքֆելլերների կորպորացիաների ակտիվներում։ 1937 թվականի դեկտեմբերի 31-ին նրանց հարստությունը կազմում էր համապատասխանորեն 574 միլիոն, 391 միլիոն, 397 միլիոն դոլար, իսկ 1956 թվականի ապրիլի 30-ին՝ 4660 միլիոն, 3769 միլիոն և 3515 միլիոն դոլար, այսինքն՝ վերջին 20 տարում նրանց հարստությունը ավելացել է 8—10 անգամ։

Չնայած առասպելական անձնական հարստությանը, այն չի տալիս այդ ընտանիքների ո՛չ հարստության, ո՛չ էլ նրանց համեմատական դրության իսկական պատկերը։ Այդ խմբերի հզորությունը հիմնվում է այն կորպորացիաների բաժնետոմսերի վրա, որոնց իրենք տիրապետում են և այդպիսով

կառավարում դրանց գործերը։ Ռոքֆելլերները վերահսկում են այնպիսի մի կապիտալ, որն ավելի քան 17 անգամ գերազանցում է հենց իրենց սեփական կապիտալը և մի քանի անգամ ավելի է Դյուպոնների ու Մելոնների կողմից վերահսկվող կապիտալից։

«Եկամուտների ռևոլյուցիայի», «եկամուտների հավասարեցման» վերաբերյալ անապացույց կեղծ պնդումները ժխտվում են այնպիսի տվյալներով, որպիսիք ցույց են տալիս ոչ միայն այն հանգամանքը, որ բուրժուական պետությունների ազգային եկամտի մեջ աշխատավորների բաժինն ընդհանրապես աննշան է, այլև այն, որ այդ բաժինը կրճատվում է։ Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ազգային եկամտի մեջ աշխատավորների բաժինը ԱՄՆ-ում կազմում էր 54 տոկոս (1923 թ.), իսկ 1951 թ.՝ մոտ 42 տոկոս, Անգլիայում՝ 45 տոկոս (1924 թ.), իսկ 1951 թ.՝ մոտ 40 տոկոս։ Ֆրանսիայում բանվորների և ծառայողների աշխատավարձի բաժինը կազմում էր 40 տոկոս (1938 թ.), իսկ 1951 թ.՝ 29 տոկոս։

«Եկամուտների ռևոլյուցիայի» քարոզիչները սիրում են վկայակոչել բուրժուական «վերդասակարգային» պետությունների հարկային քաղաքականությունը, որն իբր թե ունևորների հարստությունը հարկադրում է այնպիսի պրոգրեսիվ հարաճուն եկամտահարկով, որ առաջ է բերում «հավասարեցում», բացառում է խոշոր կապիտալների գոյացումը։

Հիրավի, հարկերը, որոնք հանդիսանում են կապիտալիստական երկրների պետական բյուջեի եկամուտների հիմնական աղբյուրը, անընդհատ աճում են։ 158 տարվա ընթացքում, ներառյալ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիները, ԱՄՆ-ում գանձվել է 244 միլիարդ դոլարի հարկ, իսկ «սառը պատերազմի» տարիների հարկը, ներառյալ 1959 թվականը, հասնում է 816 միլիարդ դոլարի։ Երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբից եկամտահարկի ընդհանուր գումարը ԱՄՆ-ում աճել է 22,5 անգամ (1941 թ. 1,8 միլիարդ դոլարից մինչև 40,7 միլիարդ դոլարի 1959 թվականին)։

Հարկային բեռի հիմնական ծանրությունն ընկնում է աշխատավորների ուսերին։ Այսպես, ԱՄՆ-ում հարուստների եկամուտներից ստացվում է անձնական եկամուտներից գանձվող ֆեդերալ ամբողջ հարկի մեկ հինգերորդից պակաս մասը։ Միացյալ Նահանգների 1955 թ. բյուջեի հիման վրա կատարված հաշվարկումների համաձայն ֆեդերալ հարկերն ու բնակչության լայն մասսաներից կատարված գանձումները կազմել են մոտ 37,1 միլիարդ դոլար, իսկ հարուստներից կատարված գանձումները՝ 29,7 միլիարդ դոլար։

Նույնիսկ ձեռնարկատերերի կողմից ֆինանսավորվող Հարկային ֆոնդ կազմակերպությունը 1954 թ. պարզել է, որ միջին ընտանիքի համար, ամբողջությամբ վերցրած, բոլոր հարկերը կազմել են նրա եկամուտների գրեթե $1/3$-ը։

Այնպիսի ռեակցիոն քաղաքագետի խոսքերով, ինչպիսին սենատոր Ջեններն է, ԱՄՆ-ի հարկերը «մի հսկայական մամլիչ է, որն ավելի ու ավելի մեծ չափով է քամում անպաշտպան, չարացած ֆերմերի ու բանվորի արյունը»։

Կապիտալիստական պետությունների հարկային սիստեմը, զանազան սողանցքների ու արտոնությունների միջոցով, որ տրվում են բնակչության հարուստ խմբերին (եկամուտների բաժանում, ընդերքի ուժասպառում, ամորտիզացիա), շնորհատվություն է վերապահում հարուստներին, որպիսի հան-



գամանքը կառավարությանն ամեն տարի 16,5 միլիարդ դոլարի կորուստ է պատճառում, որը հատուցվում է այն ընտանիքների կողմից, որոնք ունեն փոքր և միջին եկամուտներ։ Այսպիսով, մոնոպոլիաների վրա ընկնող առաջին հայացքից բարձր թվացող հարկերը հարուստների եկամուտների համար մեծ բան չեն նշանակում։

ԱՄՆ-ի ներկայացուցիչների պալատի անդամ Ջորջ Մեխոնի արտահայտությամբ ամերիկյան ֆինանսական օլիգարխիայի շահույթները վերջին տարիներին «դեպի վեր են թռչում ռեակտիվ ինքնաթիռների արագությամբ»։ 17 տարվա ընթացքում, 1939—1956 թթ. կորպորացիաների շահույթները (հարկերի վճարումից հետո) ավելացել են 430 տոկոսով, 5 միլիարդ դոլարից հասնելով մինչև 21,5 միլիարդ դոլարի։

Մոնոպոլիաների ղեկավարները ոչ միայն շահութամաս են ստանում իրենց սեփական ձեռնարկությունների շահույթներից, այլև բարձր ռոճիկներ են ստանում մոնոպոլիստական կապիտալին իրենց ծառայության համար։

Այդ անձինք մեկ շաբաթվա համար իրենք իրենց ավելի մեծ ռոճիկ են նշանակում, քան բանվորն ստանում է մեկ տարում։ Նրանցից ոմանք 100 անգամ և նույնիսկ ավելի շատ են ստանում, քան տվյալ ճյուղի բանվորի տարեկան միջին աշխատավարձն է։ 1956 թ. «Ջեներալ մոտորս»-ի պրեզիդենտն ստացել է 776 հազար դոլար. այդ նույն ֆիրմայի վարչության նախագահը՝ 701 հազար դոլար, «Ֆորդ» ֆիրմայի նախագահը՝ 656 հազար դոլար, «Բեթլեհեմ ստիլ»-ի վարչության նախագահը՝ 706 հազար դոլար և այլն։

Շահագործմամբ կորզած վիթխարի հարստության, շռայլումների ու վատնումների մասին են վկայում հետևյալ տեղեկությունները, որ բերված են ամերիկյան մամուլում։

...Նյու-Յորքի շքեղ ռեստորանն է մտնում մի տիկին՝ փոքրիկ շնիկի հետ։ Տիկինը գերմիլիոնատեր Աստորների ընտանիքի ժառանգորդն է։ Նրա շնիկի յուրաքանչյուր թաթին հագցված է մեկական բրիլյանտե մատանի, իսկ վզին՝ բրիլյանտե վզնոց։ Շան վրա կախված բրիլյանտների արժեքը հավասար է 50 հազար դոլարի։

Նյու-Յորքում կա «Պուդլտաուն» անունով գեղեցկության սալոն, որը սպասարկում է շներին։ Շներին այստեղ մանիկյուր են անում, մաքրում են ատամները, սանրում և հարդարում նրանց մազերը։ Շների համար կարելի է ձեռք բերել ուզածդ իրը, սկսած նեյլոնե պիժամայից, վերջացրած ջրաքիսի թիկնոցով 300 դոլար արժողությամբ։ Վերջերս շների զգեստավորված բալերի հագուստեղենի մեծ պահանջարկ կա։ Շների սալոնում կարելի է ընտրել նրանց համար անհրաժեշտ կահույք։ Այսպես, օրինակ, մի նավթային մագնատի կին այդ սալոնում իր գանգրամազ շան համար գնել է Լյուդովիկոս XV-ի ոճի մի մահճակալ։

...Շքեղ ճաշկերույթ է տրվել մի փոքրիկ չիկահեր շնիկի պատվին, որն ուներ 15 հազար դոլար արժողությամբ բրիլյանտե վզնոց։

...Մի քանի հարուստներ կառուցել են շների թանկարժեք գերեզմանատուն, որը ծածկված է մահարձաններով և դամբարաններով։

Ֆինանսական մագնատները հսկայական միջոցներ են ծախսում իրենց կանանց, սիրուհիների ու աղջիկների զարդարանքների վրա։ Երկու միլիոնանոց «Հույս» բրիլյանտը, «Արևելքի աստղ» խոշոր քարը և բրիլյանտե վեց

ապարանջաններ զարդարում էին տիկին Մակ-Լինին, իր իսկ կազմակերպած երեկույթի ժամանակ։ Այս «քայլող հարստությունը» և թանկարժեք զարդերից պսպղացող հյուրերին պահպանում էին 15 դետեկտիվներ և ոստիկանության մի ամբողջ ջոկատ։ Խորեյ Ս. Դոջը, ավտոմոբիլային ֆաբրիկանտի այդ այրին, իր դուստր Դելֆինեին նվիրել է մի մարգարտաշար, որն արժե 800 հազար դոլար։ Տիկին Ուիլյամսի հարյուր հազարներ արժեցող մանյակներն ու ապարանջանները կազմում են 129 քառակուսի շափյուղա, 144 քառակուսի զմրուխտ, 726 փոքր կլոր բրիլյանտներ և 79 մագարիտ։

Միլիոնատերերը հսկայական փողեր են ծախսում իրենց տների վրա։ Ուիլմինգտոնի մերձակայքում գտնվում են Դյուպոններին պատկանող 24 քաղաքամերձ կալվածք։ Դրանցից մեկը, օրինակ, Հենրի Ֆ. Դյուպոնի ռեզիդենցիան, ունի 150 սենյակ, այդ թվում քառասուն ննջարան։ Պիեռ Դյուպոնի «Լոնգվուդ» ռեզիդենցիան, ունի մոտ 200 սենյակ և 100-ից ավելի ծառայող։ «Լոնգվուդի» տեսարժան հնությունների մեջ աչքի է ընկնում իսկական նորմանդական աշտարակը իր հին զանգակներով, որոնք փոխադրվել են Ֆրանսիայից։ Այդպիսի կողոպուտի գործում Դյուպոնը միակը չէ։ Այսպես, լրագրային արքա Հերստը արկղներով մի ամբողջ ամրոց է փոխադրել Իսպանիայից Նյու-Յորք։

Ամերիկյան հարուստներն իրենց դռների մետաղյա մասերը՝ փականափեղկիկները, բռնակները և այլն, ոսկուց են պատրաստում։ Տիկին Խյու- Դիլմանի ապարանքում բոլոր ջրածորանները, բացի խոհանոցային և բուֆետային ջրածորաններից, ոսկուց են պատրաստված։

Վերջացնում ենք ԱՄՆ-ի պատմության մեջ արհմիութենական առաջին պարագլուխներից մեկի՝ հյուսն Սեթ Լյութերի, իրենց ակտուալությունը ամենևին էլ չկորցրած խոսքերով. «Մեր բոլորիս ականջներին փողհարում են ազգային հարստության, ազգային փառքի, արտադրության ամերիկյան սիստեմի և ամերիկյան արտադրության վերաբերյալ աղաղակներով... Այդ մասին անդադրում բղավում են այն մարդիկ, որոնք իրենց համար մատչելի բոլոր միջոցներով փորձում են կտրել մեր բանվոր մարդկանց աշխատավարձը... Ամբողջ կամպանիան (այն ձևով, ինչպես այն հիմա տարվում է) իրենից ներկայացնում է այնպիսի մեծագույն խաբեություն, որին առաջ ոչ մի տեղ ոչ մի ժողովուրդ չի ենթարկվել։ Մեր աչքի առջև արտադրության այդ սիստեմը երկինք են բարձրացնում. սենատի և ներկայացուցիչների պալատի կոնգրեսմենները, այդ սեփականատերերը... բոլոր միջոցներն օգտագործում են այն բանի համար, որ աչքից թաքցնեն այդ սիստեմի պայմաններում ծակող արատները։

Եվ թեկուզ մեր դեմ մղած պայքարում նրանք օգտագործում են հարստությունն ու նախապաշարմունքը, զրպարտությունն ու վիրավորանքը, մեզ մի բան է մխիթարում՝ մենք... մեծամասնություն ենք կազմում... մեր գործը ճշմարտության, արդարացիության և մարդասիրության գործ է։ Այն պետք է ճաղթանակի։ Այլևս թույլ չտանք, որ իրենց աղաղակներով մեզ խաբեն նրանք, ովքեր ոչինչ չեն արտադրում, բայց վայելում են ամեն ինչ»։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՆՑԵԼ ԵՆՔ ԳՈՐԾԻ

Կոտայքի շրջանի պարտիական կազմակերպությունները, բարելավելով տնտեսության և սոցիալիստական մրցության պարտիական ղեկավարությունը, կատարելագործելով իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, հայտաբերելով և գործողության մեջ դնելով ներքին ռեզերվները, վերջին երկու տարում լուրջ հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Մսի արտադրությունը կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացել է 20,6, կաթինը՝ 23,6 տոկոսով, ձվինը՝ 3, խաղողինը՝ 4 անգամ, պտղինը՝ 13, ծխախոտինը՝ 11,3 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է նաև անասունների գլխաքանակը։

Ամրապնդելով ձեռք բերված նախնական հաջողությունները և մտնելով սոցիալիստական մրցության մեջ, շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը ավելացնել 31,5 տոկոսով, հասցնելով 15270 ցենտների, կաթինը՝ 22,3 տոկոսով, հասցնելով 57,165 ցենտների, ձվինը՝ 2,5 անգամ, բրդինը՝ 34,4 տոկոսով։ Առանձին կոլտնտեսություններ, սովխոզներ, բրիգադներ, ֆերմաներ, օղակներ և աշխատողներ առավել բարձր պարտավորություններ են ստանձնել։ Այսպես, կաթնաանասնապահական սովխոզի կոլեկտիվը պարտավորվել է մսի արտադրությունը ավելացնել 42 տոկոսով, այն հասցնելով 2200 ցենտների, այդ թվում 600 ցենտներ խոզի միս։ 100 հեկտար հողատարածության հաշվով սովխոզներում արտադրվելու է 110 ցենտներ միս, 700 ցենտներ կաթ։ Եղվարդ, Ակունք, Արամուս, Զառ, Կապուտան և Հրազդան գյուղերի կոլտնտեսությունները կաթի արտադրությունը ավելացնելու են 25—30, մսինը՝ 35—40 տոկոսով, ձվինը՝ 3 անգամ։

Նորգյուղի կոլտնտեսությունը պարտավորվել է ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը հասցնել 3210 կիլոգրամի։ Այդ կոլտնտեսության շքանշանակիր կթվորուհի Գ. Թադևոսյանը պարտավորվել է իր խնամած ամեն մի կովից ստանալ 3500 կիլոգրամ կաթ։ Կաթնաանասնապահական սովխոզի Լենինի շքանշանակիր խոզապահուհի Թ. Սիմոնյանը պարտավորվել է յուրաքանչյուր մայր խոզից ստանալ 24 խոճկոր և 1,5 տոննա միս, ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, անվանի հովիվ Ա. Եղիազարյանը պարտավորվել է 100 մայր ոչխարից ստանալ 105 գառ, հասակավոր մեկ ոչխարից՝ 4,5 կիլոգրամ բուրդ։ Գետամեջ գյուղի թռչնաբուծական սովխոզը պարտավորվել է ձվի արտադրությունը ավելացնել ավելի քան 10 անգամ, այն հասցնելով մեկ միլիոն հատի։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման հետ միասին

կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, պետությանը ավելի վաճառել 2660 ցենտներ միս, 3400 ցենտներ կաթ, 748.000 ձու և այլ մթերքներ։

Կոլտնտեսություններն ու սովխոզները սոցիալիստական լուրջ պարտավորություններ են ստանձնել նաև հանրային անասունների գլխաքանակի ավելացման ուղղությամբ։ Այդ պարտավորությունների համաձայն խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելանալու է 8,5 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 17,7, ոչխարներինը՝ 17,3, խոզերինը՝ 20, թռչուններինը՝ 70,3 տոկոսով։

Խոշոր աշխատանք է կատարվելու կերի բազան ամրապնդելու ուղղությամբ։ Ընթացիկ տարում կոլտնտեսություններում և սովխոզներում կուտակվելու է 16.800 տոննա խոտ, 15.600 տոննա սիլոս, 10.275 տոննա ծղոտ, 1394 տոննա հատիկային կեր։ Այդ քանակությամբ կերը լիովի կբավարարի հանրային անասունների պահանջը։

Կատարված հաշվարկները և ընթացիկ տարվա առաջին եռամսյակի ընթացքում ձեռք բերված ցուցանիշները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ շրջանի գյուղատնտեսության աշխատողների ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունները միանգամայն ռեալ են։

Բարելավելով սոցիալիստական մրցության պարտիական ղեկավարությունը, պարտիայի շրջանային կոմիտեին հաջողվեց այդ հարցը պահել կոլտնտեսային և սովխոզային սկզբնական պարտկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում սոցիալիստական պարտավորությունները կազմված են ըստ ամիսների և եռամսյակների։ Շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ յուրաքանչյուր 10 օրը մեկ անգամ ամփոփում են ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։ Սոցիալիստական պարտավորությունների կատարման հարցը, որպես կանոն, ամիսը մեկ անգամ քննվում է սկզբնական պարտկազմակերպությունների ժողովներում։ Ձեռնարկվում են կազմակերպական ներգործուն միջոցներ եղած թերությունները վերացնելու, ներքին ռեզերվները հայտաբերելու և արդյունավետ օգտագործելու համար։

Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն ամիսը մեկ անգամ շրջանի մասշտաբով նույնպես քննում է սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։ Շրջկոմի բյուրոյում քննարկվում է նաև այն կոլտնտեսությունների և սովխոզների սոցիալիստական պարտավորությունների կատարման հարցը, որտեղ այդ գործում դժվարություններ կան։ Այդպիսի դեպքում շրջկոմի բյուրոն կոնկրետ միջոցներ է ձեռք առնում և կազմակերպական աշխատանքով օգնում ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Եռամսյակը մեկ անգամ սոցիալիստական մրցության արդյունքները քննարկվում են նաև շրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի համատեղ նիստում։ Պարտիայի շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը հանձնվում է այն կոլտնտեսությանը կամ սովխոզին, որն անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում առավել բարձր ցուցանիշների է հասել։

Պարտիական կազմակերպությունները լայնորեն պրոպագանդում են սո-



ցիալիստական պարտավորությունները։ Ամենուրեք ակումբներում, գրադարաններում, ֆերմաներում և աչքի ընկնող այլ տեղերում ստենդների և պլակատների ձևով ցուցադրված են կոլտնտեսությունների և սովխոզների սոցիալիստական պարտավորությունները։ Դրանց կատարումը ըստ ամիսների և եռամսյակների հրապարակվում է պատի, բազմատիրաժ և շրջանային թերթերում։

Պարտիական կազմակերպությունները աշխատավորներին խորապես և համակողմանիորեն պարզաբանում են սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, նրանց պայքարի են հանում այդ պարտավորությունների հաջող կատարման համար։ Պարտիական կազմակերպությունները ձգտում են, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսական և սովխոզի աշխատող հասկանա իր գործունեության վիթխարի նշանակությունը, այդ համարի նյութական բարիքների առատության ստեղծման և սոցիալիստական պարտավորությունների կատարման վճռական պայմանը։

Պարտիական կազմակերպությունների գործադրած ջանքերի և կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների ստեղծագործական աշխատանքի շնորհիվ հաջողությամբ կատարվեցին ընթացիկ տարվա առաջին եռամսյակի սոցիալիստական պարտավորությունները։ Կոլտնտեսություններն ու սովխոզները 1959 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, 1960 թվականի առաջին եռամսյակում մսի արտադրությունը ավելացրել են 29,8, կաթինը՝ 26,8 տոկոսով, ձվինը՝ 2,8 անգամ, ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 15,4 տոկոսով կամ 59 կիլոգրամով։

Առանձին կոլտնտեսություններ ու սովխոզներ սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում հասել են ավելի բարձր ցուցանիշների։ Նլղովան գյուղի կոլտնտեսությունն այդ նույն ժամանակաշրջանում մսի արտադրությունը ավելացրել է 2,7 անգամ, կաթինը՝ 37,6 տոկոսով, ձվինը՝ 3,3 անգամ։ Կաթնաանասնապահական սովխոզը կաթի արտադրությունն ավելացրել է 61,2 տոկոսով կամ 1091 ցենտներով, Կապուտան գյուղի կոլտնտեսությունը՝ 57,1 տոկոսով։ Հրազդան գյուղի կոլտնտեսությունը ձվի արտադրությունը ավելացրել է 3,6 անգամ, Ջովաշեն գյուղինը՝ 4,4 անգամ, Գետամեջ գյուղի թռչնաբուծական սովխոզը՝ 7,4 անգամ։ Ակունք, Արամուս, Նորգյուղ և Նլղովան գյուղերի կոլտնտեսությունները, Արզնիի պտղա-այգեգործական և Քյուլիջայի կաթնաանասնապահական սովխոզները ընթացիկ տարվա անցած երեք ամսում ֆուրաժային մեկ կովից ստացել են 622—738 կիլոգրամ կաթ։

Հաջողությամբ են կատարվում նաև հանրային անասունների գլխաքանակի ավելացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունները։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի զգալիորեն ավելացել է բոլոր տեսակի անասունների գլխաքանակը, կրճատվել են անկումները։ Լուրջ աշխատանք է կատարվում անասնաբուծության կուլտուրան բարձրացնելու, զոոանասնաբուժական միջոցառումները անթերի կատարելու, անասունների ցեղայնությունը բարելավելու գործում։ Այս տարի 15 կոլտնտեսություններում առաջին անգամ կատարվում է կովերի արհեստական սերմնավորում, որը, անկասկած, դրական նշանակություն կունենա անասունների ցեղը բարելավելու, բարելավված բարձր մթերատու անասունների գլխաքանակն ավելացնելու գործում։

Անասնաբուծական մթերքների արտադրության և հանրային անասունների գլխաքանակի ավելացման կապակցությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների իրագործման շնորհիվ հաջողությամբ կատարվում են նաև պետությանը անասնաբուծական մթերքներ վաճառելու պլանները։ 1960 թվականի առաջին եռամսյակի մսի վաճառքի պլանը կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեցին 113,1, կաթինը՝ 128,1, ձվինը՝ 185,9 տոկոսով։ Առաջին եռամսյակի ընթացքում պետությանը վաճառված յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի կենդանի քաշը եղել է 299 կիլոգրամ, սոցմրցությամբ նախատեսված 255 կիլոգրամի փոխարեն։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում կան նաև լուրջ թերություններ։ Մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ ո՛չ միայն չեն կատարել իրենց ստանձնած պարտավորությունները, այլև 1959 թվականի համեմատությամբ պակասեցրել են անասնաբուծական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը։ Սևաբերդ, Քյանքյան և Գեղարդ գյուղերի կոլտնտեսությունների վարչությունները, սկզբնական պարտիական կազմակերպությունները սահմանափակվել են սոցիալիստական պարտավորությունների ձևական ընդունմամբ և գործնական աշխատանքով չեն ապահովել դրանց կատարումը։ Դրանով պետք է բացատրել այն, որ այդ կոլտնտեսություններում ո՛չ միայն չեն կատարվել սոցիալիստական պարտավորությունները, այլև 1959 թվականի համեմատությամբ որոշ չափով պակասել է կաթի և ձվի արտադրությունը։

Քյանքյան և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսությունները հարևան են Ջովաշեն գյուղի կոլտնտեսությանը և ունեն բնա-տնտեսական նույնանման պայմաններ։ Ջովաշեն գյուղի կոլտնտեսությունը 1959 թվականի համեմատությամբ, 1960 թվականի առաջին եռամսյակում 4,4 անգամ ավելացրել է ձվի արտադրությունը, իսկ Քյանքյան և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսությունները ձվի արտադրությունը ո՛չ միայն չեն ավելացրել, այլև պակասեցրել են։ Ջովաշեն գյուղի կոլտնտեսությունը 5 անգամ ավելի շատ ձու է արտադրել, քան Քյանքյան և Սևաբերդ գյուղերինը միասին վերցրած։ Դրա գաղտնիքն այն է, որ Ջովաշեն գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպությունը պարտավորությունների կատարումը պահում է իր ուշադրության կենտրոնում, ամեն օր զբաղվում է դրանցով, մշակում և իրականացնում է պրակտիկ միջոցառումներ, որոնք հնարավորություն են տալիս ո՛չ միայն կատարելու, այլև գերակատարելու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Քյանքյան և Սևաբերդ գյուղերի կոլտնտեսությունների սկզբնական պարտկազմակերպությունները (քարտուղարներ Ս. Մանուկյան, Ս. Սարգսյան), կոլտնտեսությունների վարչությունները (նախագահներ Ջ. Հովհաննիսյան, Հ. Աբրահամյան) սոցիալիստական պարտավորություններն ընդունելուց հետո իրենց անելիքը ավարտված են համարել, ամենօրյա կազմակերպական-քաղաքական աշխատանք չեն ծավալել դրանց կատարման համար։ Նրանք 10 օրը կամ ամիսը մեկ անգամ չեն ամփոփում սոցմրցման արդյունքները, չեն մոբիլիզացնում աշխատավորների ուժերը ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։

Շրջանի մասշտաբով ընթացիկ տարվա առաջին եռամսյակում ֆուրաժային մեկ կովից ստացվել է 443 կիլոգրամ կաթ, իսկ Գեղարդ գյուղի կոլտնտեսությունում՝ 134 կիլոգրամ։ Դրա պատճառն այն է, որ Գեղարդ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպության քարտուղար Մ. Առաքելյանը և կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Պողոսյանը ավելի շատ խոսակցություններով են զբաղվում, քան գործով։ Կազմակերպչական ներգործուն միջոցներ ձեռք առնելու, եղած հնարավորություններն ու ռեզերվները արդյունավետ օգտագործելու և սոցիալիստական պարտավորությունները գործի վերածելու փոխարեն նրանք դրանց մասին դատարկ ճառեր են արտասանում և իրար կրկնող որոշումներ ընդունում։

Զգալի թվով կոլտնտեսություններ ֆուրաժային մեկ կովից շրջանի միջինից պակաս կաթ են ստացել։ Եթե բոլոր կոլտնտեսությունները ֆուրաժային մեկ կովից ստանային այնքան կաթ, ինչքան միջին հաշվով ստացվել է շրջանում, ապա կաթի համախառն արտադրությունը կավելանար 1818 ցենտներով, կամ 14,1 տոկոսով։ Այս ռեզերվի օգտագործումը ոչ մի դժվարության հետ կապված չէ և չի պահանջում լրացուցիչ ներդրումներ։

Անբավարար են ընթանում նաև գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման, առաջավոր մեթոդների արմատավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ կատարվող աշխատանքները։ Դրանով պետք է բացատրել մի շարք կոլտնտեսություններում գյուղատնտեսական մթերքների խիստ բարձր ինքնարժեքը։ Այսպես, Մայակովսկի գյուղի կոլտնտեսությունում մեկ ցենտներ հացահատիկի արտադրության վրա 1959 թվականին ծախսվել է 235 ռ. 30 կ. այն դեպքում, երբ շրջանի կոլտնտեսություններում միջին հաշվով ծախսված է 84 ռ. 10 կ.։ Ծխախոտագործական կոլտնտեսությունների մի մասում բարձր են ծխախոտի արտադրության վրա կատարված ծախսերը։ Գողթ գյուղի կոլտնտեսությունը մեկ ցենտներ ծխախոտի արտադրության վրա ծախսել 1769 ռուբլի, պետությանը վաճառել է 1685 ռուբլով։ Փաստորեն մեկ ցենտներ ծխախոտ արտադրելու համար կոլտնտեսությունը 84 ռուբլի վնաս է արել։ Դրա կողքին գտնվող Արամուս գյուղի կոլտնտեսությունը յուրաքանչյուր մեկ ցենտներ ծխախոտի արտադրությունից շուրջ 1000 ռուբլի օգուտ է ստացել։

Պտղաբուծությամբ զբաղվող կոլտնտեսություններում մեկ ցենտներ պտղի արտադրության վրա միջին հաշվով ծախսվել է 234 ռուբլի։ Մինչդեռ Գյամրեզ գյուղի կոլտնտեսությունում ծախսվել է 713, Գողթ գյուղի կոլտնտեսությունում՝ 546 ռուբլի։ Խաղողագործությամբ զբաղվող կոլտնտեսությունները մեկ ցենտներ խաղողի արտադրության վրա միջին հաշվով ծախսել են 204 ռ. 50 կ., իսկ Էլար գյուղի կոլտնտեսությունը՝ 1478 ռուբլի։ Եթե շրջանի կոլտնտեսությունները միջին հաշվով մեկ ցենտներ բանջարեղենի արտադրության վրա ծախսել են 98 ռ. 80 կ., ապա Հացավան գյուղի կոլտնտեսությունը ծախսել է 470 ռ. 30 կոպ., Գյամրեզ գյուղինը՝ 366 ռ., Գառնի գյուղի կոլտնտեսությունը՝ 353 ռուբլի։

Կոլտնտեսությունների մեծ մասում բարձր է նաև անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։ Հացավան գյուղի կոլտնտեսությունը մեկ ցենտներ կովի կաթի արտադրության վրա ծախսել է 334 ռ. 50 կ., Ողջաբերդ գյուղինը՝ 229 ռուբլի, Կապուտան գյուղինը՝ 207 ռ. 80 կ.։ Մեկ ցենտներ տավարի մսի արտադրության վրա Ակունք գյուղի կոլտնտեսությունը ծախսել է 992, Կա-

*պուտան գյուղինը՝ 1215 ռուբլի: Մեկ ցենտներ բրդի արտադրության վրա Ողջաբերդ գյուղի կոլտնտեսությունը ծախսել է 5814 ռ., Հացավան գյուղինը՝ 5704 ռուբլի: Մեկ ձվի արտադրության վրա Գեղարդ գյուղի կոլտնտեսությունը ծախսել է 3 ռ. 79 կոպ., Նուռնուս գյուղինը՝ 3 ռ. 45 կ.:*

*Բերված փաստերը ցույց են տալիս, որ նշված կոլտնտեսությունների վարչությունները, սկզբնական պարտիական կազմակերպությունները և նրանց ղեկավարները խորամուխ չեն լինում տնտեսության էկոնոմիկայի մեջ, չեն հայտաբերում և արդյունավետ օգտագործում ներքին ռեզերվները: Նրանք անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում նաև սեփական կերի արտադրության ավելացման և հանքային պարարտանյութերի հետ միասին օրգանական պարարտանյութերի օգտագործման վրա: Գնովի կերի և հանքային պարարտանյութերի միակողմանի օգտագործման վրա ծախսվում են հսկայական միջոցներ. այդ արհեստականորեն բարձրացնում է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը:*

*Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ձեռք առնել վճռական միջոցներ ամենակարճ ժամկետում վերացնելու եղած թերությունները, մոբիլիզացնել աշխատավորների ողջ ուժերը ստանձնած սոցիալիստական պարտավորություններն անթերի կատարելու համար: Պարտիայի շրջանային կոմիտեն այդ գործում պետք է բարձրացնի սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը: Նրանք պետք է ուժեղացնեն կազմակերպական աշխատանքը, կոնկրետ կերպով զբաղվեն յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի գործունեությամբ, նրանց գործնական օգնություն ցույց տան արտադրական նորմաների մշակման, աշխատանքի ու վարձատրության առաջավոր ձևերի արմատավորման և պլանային առաջադրանքների կատարման գործում:*

*Սոցիալիստական մրցությունը ծավալելու, ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կենսագործելու և յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու նպատակով պարտիայի շրջանային կոմիտեն իրագործում է կազմակերպական և տնտեսական բնույթի մի շարք միջոցառումներ, որոնց կենսագործման շնորհիվ գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ և դրամական եկամուտների ստացմամբ Կոտայքի շրջանը կդառնա մեր ռեսպուբլիկայի խոշոր, առաջավոր շրջաններից մեկը:*

*Իրականացվող միջոցառումների շնորհիվ գոյություն ունեցող էքստենսիվ անջրդի հացահատիկային ցանքերը, նվազ բերքատու կուլտուրաները փոխարինվում են արդյունավետ, առավել բերքատու և տնտեսապես շահավետ կուլտուրաներով: Մերձքաղաքային գոտու կոլտնտեսություններն ու սովխոզները մասնագիտացվում են ինտենսիվ կաթնատու և մսատու անասունների, բանջարեղենի, խաղողի, պտուղների և ծխախոտի արտադրության զարգացման ուղղությամբ: Յոթնամյակի ընթացքում մերձքաղաքային գոտու կոլտնտեսություններում և սովխոզներում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը կրճատվելու է 1000 հեկտարով, իսկ խաղողի և պտղատու այգիների տարածությունն ավելանալու է 4700 հեկտարով: Բանջարեղենի ցանքատարածությունը շրջանում հասնելու է 450 հեկտարի, իսկ ծխախոտինը՝ 500 հեկտարի:*

*Խաղողի համախառն արտադրությունը 1965 թվականին հասնելու է 52 200*



*ցենտների, պտուղներինը՝ 18 230 ցենտների, 1959 թվականին ստացված 9026 ցենտներ խաղողի և 3032 ցենտներ պտղի դիմաց: Բանջարեղենի արտադրությունը հասնելու է 58 000, ծխախոտինը՝ 8000 ցենտների, 1959 թ. ստացված 7500 ցենտներ բանջարեղենի, 5444 ցենտներ ծխախոտի դիմաց:*

*Կերի բազան ամրապնդելու հիման վրա կովերի գլխաքանակը 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ավելանալու է 4500-ով, խոզերինը՝ երկու, թռչուններինը՝ 7,6 անգամ:*

*Կատարած հաշվարկները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ կաթի համախառն արտադրությունը կոլտնտեսություններում և սովխոզներում մինչև 1965 թվականը կավելանա 3,2, մսինը՝ 3,1, այդ թվում խոզի մսինը՝ 6,8, ձվինը՝ 18,6, բրդինը՝ 2,6 անգամ: Մսի, կաթի և ձվի արտադրության յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները կկատարվեն 1963, բրդինը՝ 1964 թվականին:*

*Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով կոլտնտեսություններում կարտադրվի 65,5 ցենտներ (կենդանի քաշով) միս, 300 ցենտներ կաթ, 410 կգ բուրդ, 42 500 ձու: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ կոլտնտեսությունների դրամական եկամուտները կավելանան 40 միլիոն ռուբլով:*

*Կոտայքի շրջանի աշխատավորները ստեղծագործական եռանդուն աշխատանք են կատարում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու, Ռեսպուբլիկայում Սովետական կարգերի հաստատման և Հայաստանի Կոմպարտիայի ստեղծման 40-ամյակը արժանավայել դիմավորելու համար:*

Ա. ՄԱՐԴՈՅԱՆ

ՀԿՊ Կոտայքի շրջկոմի քարտուղար

## ՂԵԿԱՎԱՐ ԱԿՏԻՎԻ ՎՃՌԱԿԱՆ ԴԵՐԸ

*Անցած տնտեսական տարվա արդյունքներն ամփոփելիս ՀԿՊ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի շրջանային կոմիտեն իր նիստում վերլուծեց արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների գործունեությունը: Ուսումնասիրելով կոմունիստների քննադատական դիտողությունները, շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում տեղ գտած թերությունները՝ շրջկոմը եկավ այն համոզման, որ աշխատանքի անհաջողության հիմնական պատճառներից մեկն էլ ակտիվի ուժերի ոչ նպատակասլաց օգտագործումն է:*

*Ակտիվի օգտագործման հարցը միշտ էլ եղել է շրջկոմի ուշադրության կենտրոնում և այդ ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված: Սակայն շատ հաճախ այն կրել է էպիզոդիկ բնույթ: Շրջկոմի քարտուղարները սահմանափակվել են պլենումի, պարտիական ակտիվի ժողովների կամ բյուրոների հարցերի նախապատրաստման ժամանակ ակտիվին հանձնարարություններ տալով և ինֆորմացիա վերցնելով:*

*Անհրաժեշտ էր այնպես անել, որ շրջկոմի պլենումի անդամ-թեկնածուները, ինչպես և պարտիական ակտիվի լավագույն ուժերը ավելի սերտ կապ-*

վին շրջկոմի հետ, ունենան մշտական հանձնարարություններ և պատասխանատու լինեն միջոցառումները մինչև վերջ կենսագործելու համար։

Արդյոք ճիշտ չէ՞ր լինի սովետական օրգանների օրինակով շրջկոմի պլենումին կից նույնպես ստեղծել մշտական գործող հանձնաժողովներ և նրանց միջոցով ավելի լավ ու նպատակասլաց օգտագործել ակտիվի ուժերը։ Այդ հարցը քննարկվեց շրջկոմի պլենումում և որոշվեց՝ շրջկոմին կից ստեղծել պարտիական-կազմակերպական, իդեոլոգիական, արդյունաբերության և շինարարության աշխատանքներին օգնող մշտական գործող հանձնաժողովներ։ Հանձնաժողովներում, բացի շրջկոմի պլենումի անդամներից, ընդգրկվեցին նաև ակտիվի լավագույն ուժերը, պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական աշխատանքի փորձ ունեցող կոմունիստներ՝ գործարանների դիրեկտորներ, մանկավարժներ, արտադրության առաջավորներ, գիտական աշխատողներ և ուրիշներ։

Մշտական գործող հանձնաժողովներում ստեղծվեցին տարբեր սեկցիաներ, որոնցից ամեն մեկն ընդգրկում է աշխատանքի այս կամ այն բնագավառը։ Այսպես, պարտիական-կազմակերպական հանձնաժողովում ստեղծված են՝ ներպարտիական, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի և հասարակական կազմակերպությունների գործունեությանը օգնող սեկցիաներ։ Իդեոլոգիական հանձնաժողովում ստեղծված են՝ կոմունիստների մարքս-լենինյան կրթության, աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական, ուսումնադաստիարակչական աշխատանքների և շրջանի գիտա-հետազոտական ու ստեղծագործական կազմակերպությունների գործունեությանը օգնող սեկցիաներ։ Արդյունաբերությանը վերահսկող մշտական հանձնաժողովում ստեղծվեցին՝ աշխատարար պրոցեսների ավտոմատացմանն ու մեքենայացմանը, թողարկվող արտադրանքի որակին, գյուտարարության ու ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրմանը, սոցմրցման կազմակերպմանն ու առաջավոր փորձի փոխանակմանը, ինչպես նաև արտադրության նոր տեսակների յուրացմանն ու թողարկմանը օգնող սեկցիաներ։ Շինարարությանը օգնող մշտական հանձնաժողովն ունի բնակարանային շինարարության, շինարարական աշխատանքների որակին և արտադրական օբյեկտների շինարարությանը հետևող սեկցիաներ։

Հանձնաժողովներն ու սեկցիաներն ունեն նախագահներ, որոնք կապ են պահպանում շրջկոմի որևէ քարտուղարի հետ։ Ամեն մի հանձնաժողով ունի աշխատանքի պլան, որտեղ որոշակի տեղ է տրվում սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնությանը, տեղերում հարցերի կոնկրետ լուծմանը։

Այդ հանձնաժողովների աշխատանքը հիմք է տալիս ասելու, որ շրջկոմի առջև ծառացած խնդիրների կատարման բնագավառում պարտիական ակտիվի օգտագործման այս ձևը, լավ հսկողության ու հետևողականության դեպքում, լիովին արդարացնում է իրեն և արժանի է ուշադրության։ Մինչ այդ շատ հարցեր բազմակողմանիորեն չէին լուծվում, որովհետև շրջկոմը չուներ համապատասխան քանակությամբ մասնագետներ, որի հետևանքով լրիվ չափով իրազեկ չէր ձեռնարկությունների կյանքին. այժմ հանձնաժողովների մասնագետ անդամների խելացի առաջարկությունները, տեղերում հարցերի կոնկրետ ու բանիմաց ուսումնասիրությունը և շրջկոմի բյուրոյում կամ պլենումում հարցերի քննարկումը տալիս է դրական արդյունք։ Ահա բազմաթիվ օրինակներից մեկը. պարտիական կազմակերպական հանձնաժողովի ներպարտիական աշխատանքների կազմակերպմանն օգնող սեկցիան (նախագահ Ի. Բերբերյան), շրջկոմի ցուցումով ուսումնասիրեց շրջանի արտադրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծված ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների աշխատանքը։ Պարզվեց, որ շրջկոմի կողմից մինչև այժմ ձեռք առնված միջոցները, ինչպես և պարտկազմակերպության քարտուղարների ու հանձնաժողովների նախագահների համար կազմակերպված սեմինար պարապմունքները, հրավիրված խորհրդակցությունները դեռևս ոչ բոլոր տեղերում են դրական արդյունք տվել։ Արտադրական մի շարք ձեռնարկություններում հանձնաժողովների մի մասը, նրանց նախագահները դեռ լավ չեն պատկերացնում իրենց անելիքները։ «Կարմիր ջուլհակ» ֆաբրիկայում արտադրանքի որակին հսկող հանձնաժողովի գործունեությունը սահմանափակվում է միայն ստուգումներով և ակտեր կազմելով. այդ նսեմացնում է վերահսկողության դերը։ Կահույքի ֆաբրիկայում հումքի և նյութերի մատակարարմանը հսկող հանձնաժողովի նախագահն ու անդամները արտադրությանն օգնել ասելով հասկանում են միայն հանձնաժողովի անդամների անձնական մասնակցությունը նյութերի մատակարարման գործին։ Որպես ընդհանուր թերություն նշվեց, որ հանձնաժողովներն իրենց աշխատանքում դեռևս լայն կերպով չեն ներգրավում բոլոր կոմունիստներին և անպարտիական ակտիվին։ Հանձնաժողովների շատ անդամներ դեռևս լավ չեն ուսումնասիրել արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններին կից՝ ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտկազմակերպությունների կողմից վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովների կանոնադրությունը, իսկ նրանց համար կազմակերպված հրահանգչական խորհրդակցություններն ու սեմինար պարապմունքները չերտավորված կերպով չեն տարվել։

Նշված թերությունները վերացնելու և հանձնաժողովների գործունեությունը բարելավելու հարցերը լայնորեն քննարկվեցին շրջկոմի պլենումում և կոնկրետ միջոցառումներ մշակվեցին գոյություն ունեցող թերությունները վերացնելու համար։

Ուշադրության արժանի է նաև իդեոլոգիական աշխատանքի կազմակերպմանն օժանդակող հանձնաժողովի գործունեությունը, որի նախագահն է Հ. Ավետիսյանը։ Այս հանձնաժողովը մանրակրկիտ կերպով ուսումնասիրել է պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակների ու սեմինարների գործունեությունը և օգնել նրանց մի շարք հարցերում։ Հանձնաժողովը հանգամանորեն քննել է քաղաքական-դաստիարակչական աշխատանքների վիճակը Ֆիզիկայի ինստիտուտում և այլն։ Հանձնաժողովի աշխատանքներին ակտիվ կերպով մասնակցել են պետարխիվի դիրեկտոր Մ. Բաբաջանյանը, Ակադեմիայի բիոքիմիայի կրտսեր գիտական աշխատող Ա. Գալոյանը, գրող Վ. Նորենցը և ուրիշներ. իրենց խելացի առաջարկություններով նրանք օգնում են շրջկոմին՝ ժամանակին լուծելու մի շարք կարևոր հարցեր։

Շրջանային պարտիական կոնֆերանսում և սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում բազմիցս խոսվել է բնակչության մեջ

տարվող քաղաքական-մասսայական անբավարար աշխատանքի մասին, մի շարք որոշումներ են կայացվել, պարտավորեցրել են պարտիական կազմակերպություններին՝ զբաղվելու այդ հարցով, բայց գործը քիչ է բարելավվել։ Հաշվի առնելով այդ ուղղությամբ եղած քննադատական դիտողությունները և խորհրդակցելով քաղաքական-մասսայական աշխատանքին օգնող սեկցիայի անդամների հետ, որոշվեց բնակչության մեջ աշխատանք տանել նաև դպրոցների միջոցով, բնակիչներին ներգրավելու գործը հանձնարարելով դպրոցի պիոներներին ու կոմերիտականներին։ Օգնության եկան նաև ուսուցչական կոլեկտիվները։ Հաջողությունը ակնհայտ է։ Այժմ շրջկոմի բյուրոյում հաստատված ամենամսյա թեմատիկ պլանով քաղկոմի, շրջկոմի ու շրջսովետի ղեկավար ընկերներից 12 հոգի սիստեմատիկաբար հանդես են գալիս բնակիչների բազմամարդ ժողովներում ու նրանց բացատրում պարտիայի և կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության շատ հարցեր։

Քսանվեց կամիսարների անվան շրջանում տեղավորված են այնպիսի արտադրական ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Կանազի, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների, էլեկտրալուսավորման ու տեղադրման արմատուրայի, գործիքաշինական, ֆրեզերային հաստոցների և այլն, որոնք պահանջում են ավելի մանրակրկիտ ու խորացված աշխատանք, արտադրության ավելի հստակ կազմակերպում և նոր տեխնիկայի հմուտ օգտագործում։ Այս ամենն, անշուշտ, շրջանի պարտիական կազմակերպությունների և շրջկոմի աշխատողներին պարտավորեցնում է հաճախ լինել արտադրական ձեռնարկություններում, հսկել, օգնել արտադրությունը ճիշտ կազմակերպելու, աշխատանքի պրոցեսում որոշ արգելքներ ժամանակին հաղթահարելու և առաջադրանքները կատարելու գործում։ Այդպիսի պատասխանատու աշխատանքը միայն շրջկոմի փոքրաթիվ հրահանգիչներով հնարավոր չէ կատարել. այս գործում մեծ օգնություն է ցույց տալիս շրջկոմին կից ստեղծված արդյունաբերության մշտական գործող հանձնաժողովը։

Ինչպես նշվեց վերը, այդ հանձնաժողովն ունի 5 սեկցիա. ստուգումների ու ահազանգումների միջոցով դրանք օգնում են շրջկոմին՝ բարձրացնելու արտադրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների ու տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը պետական առաջադրանքների կատարման գործում։ Այսպես, սոցիալիստական մրցության և առաջավոր փորձի փոխանակման սեկցիայի (նախագահ Պ. Պետրոսյան) տարվա սկզբին կատարած ստուգումները ցույց տվին, որ ֆրեզերային հաստոցների, գործիքաշինական գործարանների և շրջանի մյուս արտադրական օբյեկտների սկզբնական պարտիական կազմակերպություններն անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության կազմակերպմանը։ Սեկցիայի անդամներ Մ. Խերիբեկյանի, Ա. Գասպարյանի, Հ. Դավթյանի և մյուսների խորհրդով շրջանային կոմիտեն ակտիվից 19 հոգու ուղարկեց տեղերը՝ գործնական օգնություն ցույց տալու։ Այժմ շրջանի բոլոր արտադրական ձեռնարկություններն ունեն սոցիալիստական մրցության կոնկրետ պարտավորություններ և պայքարում են դրանց կատարման համար։

Շրջկոմի պլենումի անդամ Հ. Սիմոնյանի խորհրդով, միութենական առաջավոր գործարանների օրինակով շրջկոմը կազմակերպեց նաև ցուցադրական ագիտացիայի միամսյակ։ Այժմ ժամացույցի, էլեկտրալուսավորման ու տեղադրման արմատուրայի և մյուս գործարաններում ու շրջանի մի շարք այլ օբյեկտներում կարգի են բերված պատվո և ցուցանիշների տախտակներ, վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը լուսաբանող թերթիկներ, ամենուրեք կարելի է տեսնել կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնող լոզունգներ և այլն։

Հետաքրքրական աշխատանք է կատարում արտադրանքի նոր տեսակների յուրացմանը օգնող սեկցիան, որը հետևում է նաև էքսպորտի պլանների կատարմանը։ Սեկցիայի մյուս անդամների հետ միասին սեկցիայի նախագահ Վ. Մարգարյանը ամենայն բարեխղճությամբ ուսումնասիրեց թողարկվող արտադրանքի նոր տեսակների յուրացման ընթացքը շրջանի արտադրական ձեռնարկություններում (դրանց թիվը այս տարի հասնում է 41-ի)։

Ուսումնասիրությունները ցույց տվին, որ կատարված զգալի աշխատանքի կողքին կան լուրջ թերություններ։ Ժամացույցի գործարանի, ճկահույքի ֆաբրիկայի և շրջանի մյուս արտադրական ձեռնարկությունների ղեկավարներն անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում արտադրանքի նոր տեսակների արտադրությանը, այդ նպատակի համար պահանջվող տեխնիկական գծագրերի ու արտադրության տեխնոլոգիայի մշակմանը։ Էլեկտրալամպերի և էլեկտրալուսավորման ու տեղադրման արմատուրայի գործարաններում ինչպես հարկն է չեն զբաղվում անհրաժեշտ սարքավորումներ ձեռք բերելու գործով։ Պարզվեց նաև, որ արտադրանքի նոր տեսակների յուրացման վրա խոշոր չափով ազդում է համապատասխան քանակի նյութերի պակասը։ Այսպես, օրինակ, ժամացույցի գործարանում առաջին եռամսյակում նախատեսված էր արտադրել 100 հազար հատ սեղանի արթնացուցիչ ժամացույց՝ պլաստմասսային կորպուսով, բայց այդպիսի կորպուսներ դեռևս չեն ստացվել։

Սեկցիայի կողմից նախապատրաստված հարցը քննվեց շրջկոմի բյուրոյում։ Քննարկումից հետո շրջանի որոշ արտադրական ձեռնարկություններում այդ ուղղությամբ որոշակի աշխատանք ծավալվեց։

Շրջկոմին կից ստեղծված շինարարական աշխատանքներին (շրջանն ունի 7 շին. կազմակերպություն) օգնող մշտական հանձնաժողովում (նախագահ Գ. Մելիքյան) ընդգրկված են շինարարության գործը լավ հասկացող 17 ընկերներ։ Հանձնաժողովը ուսումնասիրեց և բյուրոյի քննարկմանը ներկայացրեց էլեկտրալամպերի գործարանի հիմնական կորպուսներից մեկի շինարարության վիճակը և այժմ հետևում է ընդունված որոշման կատարման ընթացքին։ Քննարկման է նախապատրաստվում նաև Կանազի ֆոլգագլանման ցեխի շինարարական պլանների կատարման ընթացքը։

Ակտիվի ներգրավումը հանձնաժողովների աշխատանքներին հնարավորություն է տալիս օգտագործելու նրանցից յուրաքանչյուրին ըստ իր ունակությունների և աշխատանքային փորձի։ Հանձնաժողովներում ընդգրկված ընկերները շրջկոմի հանձնարարությունները կատարում են մշտապես, սկսած գործին հետևում մինչև նրա վերջնական ավարտը։

Արտադրանքի որակին հետևող սեկցիան ընկ. Անտոնյանի ղեկավարությամբ հունվար ամսին ուսումնասիրեց ժամացույցի գործարանի արտադրանքի որակը և հարցը մտցվեց շրջկոմի բյուրո։ Ավտոմատացմանը և մեքենայացմանը օգնող սեկցիան (նախագահ Ռ. Ամիրյան) ուսումնասիրեց ալյումինի

գործարանի աշխատատար պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման վիճակը։

Աշխատանքի կազմակերպման այս նոր ձևը ավելի է բարձրացնում կոմունիստների պատասխանատվությունը, նրանց վրա դնում նոր պարտականություններ։ Պլենումի այն անդամները, որոնց աշխատանքը միայն պլենումի նիստերին մասնակցելն էր, այժմ մշտապես կապված են շրջկոմի, նրա առօրյա գործունեության հետ, ակտիվ կերպով մասնակցում են պլենումի որոշումների կատարմանը։ Շրջկոմը ավելի հանգամանորեն է զբաղվում շրջանի տնտեսական ու կուլտուրական շինարարության հարցերով, ավելի ճիշտ են լուծվում այդ բնագավառի խնդիրները, բարելավվում է շրջկոմի կողմից սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարությունը։

Այսպես, անցյալ տարի քննարկվել է ընդամենը 7 արտադրական հարց, իսկ այս տարվա միայն առաջին եռամսյակում՝ 4 հարց։ Որոշակի բեկում է նկատվում նաև արտադրական պլանների կատարման գործում։ Առաջին եռամսյակում շրջանի արտադրական ձեռնարկությունները համախառն արտադրանքի պլանը կատարեցին 103,1 տոկոսով, տալով 4 միլիոն 336 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Անհամեմատ կրճատվել է պլան չկատարող ձեռնարկությունների թիվը։

Շրջկոմի մշտական հանձնաժողովները ակտիվին պարտիական-քաղաքական ու կազմակերպական աշխատանքում ներգրավելու միակ ձևը չեն։ Տեղերում կոնկրետ օգնություն ցույց տալու համար լայնորեն օգտագործվում են նաև արտահաստիքային հրահանգիչները, որոնց թիվը հասնում է 13-ի։

Շրջկոմում անհրաժեշտ աշխատանք է տարվում նաև ակտիվի տնտեսագիտական գիտելիքների բարձրացման ուղղությամբ։ Անց են կացվում կոմունիստական շինարարության ակտուալ հարցերին նվիրված տեսական կոնֆերանսներ, զեկուցումներ, զրույցներ և այլն։ Ակտիվի հետ տարվող սիստեմատիկ աշխատանքը նրան սերտորեն կապում է ինչպես շրջկոմի, այնպես էլ սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ, օգնում վերջիններիս՝ հաջողությամբ լուծելու առաջադրված խնդիրները։

Ն. ՄՈՒՐԱԴՅԱՆ
ՀԿՊ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի
շրջանային կոմիտեի քարտուղար

# ՕԳՏԱԿԱՐ ՁԵՎԵՐ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումը նոր թափ հաղորդեց Երևան քաղաքի Լենինյան շրջանի պարտիական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական ողջ աշխատանքին։ Շրջանում հազարավոր կոմունիստներ ու անպարտիական ակտիվիստներ քաղաքական ուսուցման տարբեր օղակներում ուսումնասիրում են պարտիայի պատմությունը, մարքս-լենինյան տեսության հարցերը, արդյունաբերության, գյուղատնտեսության, առևտրի, կապի, տրանսպորտի էկոնոմիկան, պարտիայի ներքին և արտաքին քաղաքականությունը, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի կառուցման, միջազգային բանվորական շարժման կարևորագույն պրոբլեմները և այլն։



Պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք են ծավալել պարտիական պրոպագանդան նոր պահանջներին համապատասխան վերակառուցելու ուղղությամբ։ Հաղթահարված են գաղափարական աշխատանքի մի շարք թերություններ, ակտիվացել է պարտիական կազմակերպությունների գաղափարական կյանքը, այն դարձել է ավելի կենդանի ու բազմազան, բարձրացել է քաղաքական աշխատանքի կազմակերպող և մոբիլիզացնող ուժը։

Լավագույն պրոպագանդիստների փորձը մասսայականացնելու, ինչպես նաև պրոպագանդիստներին, սեմինարավարներին, կոնսուլտանտներին ու ագիտկոլեկտիվների ղեկավարներին տեսական ու մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով շրջկոմին կից ստեղծվել է մեթոդական խորհուրդ։ Նրա նախաձեռնությամբ և Խ. Աբովյանի անվան Հայկական մանկավարժական ինստիտուտի ՍՄԿՊ պատմության և քաղաքատնտեսության ամբիոնների ակտիվ մասնակցությամբ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում ստեղծվել է «Արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող համալսարան», ուր ընդգրկվել են ծառայողներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ցեխերի վարիչներ, կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամներ և շատ ուրիշներ։ 13 խոշոր կազմակերպություններում ստեղծվել են հասարակական կարգով աշխատող քաղաքական լուսավորության կաբինետներ, որոնք տեսական ու մեթոդական մեծ օգնություն են ցույց տալիս մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրողներին։ Շրջանում այժմ գործում են կուլտուրայի 6 համալսարան ու 12 «Ագիտատորների դպրոց», 283 քաղդպրոց, քաղխմբակ և տեսական սեմինարներ, ընդ որում արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող՝ 16 սեմինար, տրանսպորտի, առևտրի, գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող՝ 11 սեմինար, քաղաքատնտեսության՝ 11, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմն ուսումնասիրող՝ 3 սեմինար։ Այսպիսով, պարտիական լուսավորության ցանցում ընդգրկված են 4800 հոգի, այդ թվում կոմունիստներ՝ ավելի քան 3500, անպարտիականներ՝ մոտ 1200 հոգի։

Պետք է նշել, որ անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ, ինչպես պարտիայի պատմություն ուսումնասիրող խմբակների ու սեմինարների, այնպես էլ կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարների թիվը գրեթե կրկնապատկվել է։ Ուսումնասիրողները ավելի ջանասիրությամբ են աշխատում գրքի վրա։ Շատ պարտիական կազմակերպություններ լայնորեն օգտագործում են այնպիսի փորձված ձևեր, ինչպիսիք են՝ ռեֆերատը, տեսական զրույցը, կոնֆերանսը և այլն։

Պարտշրջկոմին կից գործում են պարտիայի պատմությունը և կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարներ, որոնցում հիմնականում ընդգրկված են պրոպագանդիստներ, ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ, պարտիական կազմակերպությունների քարտուղարներ ու հասարակական կազմակերպությունների աշխատողներ։

Պարտիական լուսավորության ցանցում ընդգրկված կոմունիստների ճնշող մեծամասնությունը սկսել է ավելի հանգամանորեն զբաղվել արտադրության էկոնոմիկայի հարցերով, կազմակերպել մասսաներին, ակտիվ կերպով մարտնչել պետական առաջադրանքների կատարման ու գերակատարման համար։ Այդ մասին է վկայում այն, որ շրջանի արտադրական ձեռնարկություն-

ները 1959 թվականը՝ յոթնամյակի առաջին տարին, փակեցին լավագույն ցուցանիշներով։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման վիթխարի պլանը պահանջում է ավելի արագ տեմպեր, ավելի մեծ հաջողություններ, քան գոյություն ունեն այժմ։ Այս առումով էլ յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն, ամեն մի պրոպագանդիստ, սեմինարի ղեկավար պետք է կոնկրետ տվյալներով, համոզիչ փաստերով ցույց տա պարտիայի առաջադրած այդ պատմական խնդրի լուծման հնարավորությունները տվյալ ձեռնարկությունում, կառույցում։ Դա, անշուշտ, մեծ չափով կնպաստի մեր առաջընթացին։ Կյանքը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր պարտիական կազմակերպությունը խելացի ձևով է կազմակերպում պրոպագանդիստական աշխատանքը, զինում է կոմունիստներին ու կոլեկտիվի բոլոր անդամներին մարքս-լենինյան առաջավոր թեորիայով, սիստեմատիկաբար պարզաբանում պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները, օգնում կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի՝ գտնելու իր տեղը այդ խնդիրների կատարման գործում, այնտեղ, անկասկած, բարձր է պարտիական ու պետական կարգապահությունը, մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը։ Հիդրոհաղորդակ, էլեկտրատեխնիկական գործարանների, «Արարատ» տրեստի, գինու կոմբինատի, ՀՍՍՌ Ժողտնտխորհի մի շարք վարչությունների և այլ պարտիական կազմակերպություններ կարողանում են քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցել ձեռնարկությունների ու հիմնարկությունների առջև դրված խնդիրների լուծման հետ։

Լավ է դրված գործը Հայկական ՍՍՌ Ֆինանսների մինիստրության պարտիական կազմակերպությունում. «Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկության էկոնոմիկան» ուսումնասիրող սեմինարում, որի ղեկավարն է ընկ. Է. Սարգսյանը, պարապմունքները կանոնավոր են ընթանում։ Էկոնոմիկայի հարցերը տեսականորեն ուսումնասիրելիս սեմինարի մասնակիցները դրանք կապում են առանձին արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի հետ, վերլուծում նրանց ֆինանսա-տնտեսական գործունեությունը։ Այդ նպաստում է նյութի խոր յուրացմանը, բարձրացնում ունկնդիրների ակտիվությունը, օգնում նրանց՝ հանձնարարված գործը բարձր որակով կատարելու։

Բայց եթե վերլուծենք մի շարք պարտիական կազմակերպությունների աշխատանքը Կենտկոմի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշման պահանջի ոգով, ապա կտեսնենք, որ նրանք ամբողջովին չեն հաղթահարել գաղափարական-քաղաքական աշխատանքների կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտիկայից, բանավոր պրոպագանդայում հաճախ պակասում են կոնկրետությունն ու նպատակասլացությունը։

Երևանի մսի կոմբինատի պարտիական կազմակերպության, ինժեներատեխնիկական անձնակազմի ու դիրեկցիայի գործունեությունը տարիներ շարունակ իրավացիորեն քննադատվում է այն բանի համար, որ կոմբինատը սիստեմատիկաբար չի կատարում պետական առաջադրանքները։ Սակայն կոմբինատի պարտիական կազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Ա. Քոսյան) ու դիրեկցիան հարկ եղած հետևություն չեն արել դրանից, և գործերի վիճակը գրեթե ոչնչով չի փոխվել։ Այստեղ թույլ է պարտիական ու պետական կարգապահությունը, վատ են տեղաբաշխված կոմունիստների ուժերն արտադրության մեջ, ցածր է արտադրական կուլտուրան, պահանջվող չափով աշխատանք չի տարվում կոմբինատը տեխնիկապես հագեցնելու, արտադրական բոլոր պրոցեսները մեքենայացնելու համար և այլն։ Այս թերությունների հիմնական պատճառներից մեկն այն է, որ պարտբյուրոն պարտիական քաղաքական աշխատանքը անբավարար է շաղկապում կոմբինատի առջև դրված խնդիրների լուծման հետ։ Անգործության է մատնված ագիտկոլեկտիվը։ Բավական է նշել, որ մեկ տարվա ընթացքում բյուրոյի նիստերում ու պարտիական ժողովներում չի քննարկվել ինչպես քաղաքական ուսուցման, այնպես էլ կոմբինատում տարվող ագիտացիոն մասսայական աշխատանքի վիճակը։

Դեռևս լուրջ թերություններ կան պրոպագանդիստական կադրերի ընտրության ու դաստիարակության, նրանց տեսական մակարդակի և մեթոդական վարպետության բարձրացման բնագավառում։ Որոշ պարտիական կազմակերպությունների բյուրոներ պահանջվող հսկողություն չեն սահմանում պրոպագանդիստների ու սեմինարավարների գործունեության նկատմամբ, որի հետևանքով ձախողվում են պարապմունքները։ Համակցված կերի գործարանի պարտիական կազմակերպությունում պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակի պրոպագանդիստ Թ. Գևորգյանը ձախողել է խմբակի պարապմունքները։

Առանձին կազմակերպություններում անբավարար է դրված մարքս-լենինյան տեսության ինքնուրույն ուսումնասիրման գործը։ ՀՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունում ինքնուսուցմամբ զբաղվողների համար (կոնսուլտանտ մինիստր Բաղրամյան) մինչև օրս ոչ մի կոնսուլտացիա չի անցկացվել։ Վատ է դրված գործը Մարտի 8-ի անվան ֆաբրիկայում (պարտկազմակերպության քարտուղար Զ. Գալիկյան). ինքնուրույն ուսումնասիրողներ՝ ֆաբրիկայի գլխավոր ինժեներ Բաղդասարյանը և գլխավոր հաշվապահ Պիվազյանը ինքնուրույն ուսուցումը համարում են միայն թերթ ընթերցելը։ Հիշյալ կազմակերպություններում չեն ընթերցվում ռեֆերատներ, չեն անցկացվում տեսական կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ և այլն։

Շրջանի շատ կազմակերպություններ որոշակի աշխատանք են կատարել կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրության բնագավառում։ Շրջկոմը կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարների աշխատանքները բարելավելու նպատակով սիստեմատիկաբար կազմակերպում է դասախոսություններ ու լավագույն սեմինարների փորձի փոխանակում։ Վերջերս սեմինարավարների ու շրջանի տնտեսական ղեկավար աշխատողների համար կազմակերպվեց «Տնտհաշվարկը որպես արտադրության կազմակերպման լավագույն ձև» (էլեկտրատեխնիկական գործարանի և գինու կոմբինատի 1959 թվականի ֆինանսատնտեսական գործունեության վերլուծման տվյալներով) թեմայով դասախոսությունը, որը կարդաց պրոֆեսոր Ղ. Շաքարյանը։ Սեմինարը շատ հետաքրքիր անցավ. դասախոսը նախօրոք եղել էր հիշյալ կազմակերպությունում, խորացել նրա գործունեության մեջ և դասախոսությունը համեմել տեղից բերված օրինակներով։ Կազմակերպվել է արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող 2 սեմինարավարների՝ Է. Սարգսյանի (ՀՍՍՌ Ֆինանսների մինիստրությունից), Մ. Ավետիքյանի (գինու կոմբինատից) փորձի փոխանակում։

Հաշվի առնելով, որ Առևտրի մինիստրությունը և դրան ենթակա կազմակերպությունները հիմնականում գտնվում են Լենինյան շրջանում, կազմակերպվել է առևտրի էկոնոմիկան ուսումնասիրող երկամյա համալսարան, որտեղ ընդգրկվել են առևտրի շուրջ 200 աշխատողներ. համալսարանն արդեն սկսել է իր աշխատանքները։

Տնտեսագիտական գիտելիքների լայն տարածման համար Հայկական ՍՍՌ Ֆինանսների մինիստրության պարտիական կազմակերպությունը կատարել է խրախուսելի աշխատանք. ստեղծվել է դասախոսական խումբ, որի կազմում ընդգրկված են 24 որակյալ տնտեսագետ. առանձին տնտեսագիտական թեմաների շուրջ նրանք դասախոսություններ են կարդում ո՛չ միայն մինիստրության աշխատողների, այլև ռեսպուբլիկայի ֆինանսական աշխատողների և տնտեսական ակտիվի համար։ Վատ չի սկսել իր գործունեությունը Ժողտնտխորհի պարտկոմին կից վերջերս ստեղծված դասախոսական խումբը, որը բաղկացած է 20 հոգուց։

Մինչև այժմ կոնկրետ էկոնոմիկայի և ընդհանրապես էկոնոմիկայի հարցերի ուսուցումը կազմակերպվել է միայն ղեկավար աշխատողների համար։ Ժամանակն է, որ տնտեսական գիտելիքների ուսումնասիրման գործում ընդգրկվեն բոլոր աշխատողները։ Պարտիայի շրջանային կոմիտեն միջոցներ է ձեռնարկել նաև այդ ուղղությամբ։ Վերջերս շրջանի 11 արտադրական ձեռնարկություններում ստեղծվել են կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող 18 դպրոց, ուր ընդգրկվել են 411 բանվոր։ Դպրոցներն ունեն թեմատիկ պլաններ և սկսել են իրենց աշխատանքները։ Տեղի է ունեցել մեկական պարապմունք։ Կազմակերպված ու հաջող սկսեցին իրենց գործունեությունը գինու կոմբինատի, հիդրոհաղորդակ, հացի № 1 գործարանների, Ջկալովի անվան կոշկի ու Մարտի 8-ի անվան կարի ֆաբրիկաների կազմակերպություններում ստեղծված կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող դպրոցները։

Շրջանի պարտիական կազմակերպությունները որոշ աշխատանք են կատարել բնակչության շրջանում։ Մեկ տարի է, ինչ գործում են կուլտուրայի 3 համալսարան, որոնցից մեկը շրջանի մանկավարժական կադրերի, 2-ը՝ բնակչության համար։ Վերջերս ստեղծվեց երկաթուղային տրանսպորտի աշխատողների կուլտուրայի համալսարան։ Աշխատավորության դաստիարակության համար շատ բան է անում Նոր-Արեշի կուլտուրայի տունը (դիրեկտոր Մ. Չրփլախյան)։ Այստեղ կազմակերպվել և անց են կացվել ցիկլային դասախոսություններ՝ Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, Սովետական Միության արդյունաբերության և գյուղատնտեսության աճը, միջազգային դրությունը, Ն. Ս. Խրուշչովի այցը ԱՄՆ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիայի արդյունքները, Հայաստանը, Երևանը և Լենինյան շրջանը յոթնամյակում և այլ թեմաներով։ Սիստեմատիկաբար կազմակերպվում են գիտա-աթեիստական թեմաներով դասախոսություններ, զեկուցումներ, ցուցադրվում են կինոժուռնալներ։

Նոր-Արեշի կուլտուրայի տունը լուրջ ուշադրություն է հատկացնում բնակչության ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին։ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը հավերժացնելու նպատակով կուլտուրայի տանը բացվել է ադրբեջանական ժողովրդական նոր թատրոն։ Հաճախակի կազմակերպվում են եղբայրական ռեսպուբլիկաների ար-



վեստի, գիտության, կուլտուրայի բնագավառների անվանի մարդկանց հանդիպումներ. կազմակերպվում են նաև արտադրության առաջավորների, արվեստի աշխատողների հանդիպումներ բնակչության հետ։

Վերջերս անցկացվեց կուլտուրայի համալսարանի հերթական պարապմունքը, որտեղ բանասիրական գիտությունների թեկնածու Ռ. Զարյանը հանդես եկավ «Հայ թատրոնը և նրա վետերանները» թեմայով։ Զեկուցումից հետո ելույթ ունեցան ՍՍՌՄ ժողովրդական դերասան Հ. Ներսիսյանը և ՀՍՍՌ ժողովրդական դերասան Ա. Ավետիսյանը։

Սակայն բնակչության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքներում դեռևս կան լուրջ թերություններ. այն վատ է դրված հատկապես տնային տնտեսուհիների, չաշխատող բնակչության շրջանում։ Պետք է նշել, որ շրջկոմի քաղլուս կաբինետը հետևողական չէ այս խնդրում։ Վերջերս վերանայվել է թաղամասերում ագիտացիոն աշխատանք տանող կազմակերպությունների ցանցը, ագիտատորների կազմը, որը համալրվել է պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի փորձ ունեցող ղեկավար ընկերներով։

Արդի պայմաններում ամենաառաջնակարգ և կարևորագույն խնդիրներից է ապագա մարդու ճիշտ դաստիարակման շնորհակալ ու պատասխանատու գործը։ Անհրաժեշտ է վճռաբար բարձրացնել գաղափարական աշխատանքի մակարդակը, այն ամբողջովին ի սպաս դնել սովետական մարդկանց մեջ նոր հատկություններ զարգացնելու գործին, նրանց դաստիարակել կոլեկտիվիզմի, աշխատասիրության, նոր հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով։ Այդ իմաստով էլ խիստ բարձրանում է հասարակության դերը յուրաքանչյուր անհատի դաստիարակության գործում, և շատ կոլեկտիվներ պատվով են կատարում այդ շնորհակալ աշխատանքը։ Կաշվի վերամշակման արտելի կոլեկտիվն իր ձեռքն է վերցրել իրենց նախկին աշխատող, երիտասարդ բանվոր Լ. Խաչատրյանի դաստիարակության գործը։ Ընկնելով առանձին անձանց ազդեցության տակ, Լ. Խաչատրյանը լքում է աշխատանքը։ Տեսնելով, որ նա վատ ճանապարհի վրա է կանգնած, կոլեկտիվը միջոցներ է ձեռնարկում նրան դաստիարակելու համար։ Խաչատրյանը դիմում է գրում կոլեկտիվին՝ ներողություն խնդրելով, որ ինքը խաղացել է կոլեկտիվի հեղինակության հետ և խոսք է տալիս վերջ տալ իր վատ արարքներին։ Դիմումը քննարկվում է կոլեկտիվի ժողովում, և Խաչատրյանին նորից ընդունում են աշխատանքի։ Անցել է արդեն ավելի քան երեք ամիս, ինչ Խաչատրյանը աշխատում է արտելում. որպես բանվոր նա իրեն լավ է դրսևորում աշխատանքում և սկսել է վայելել կոլեկտիվի անդամների համակրանքը, նա արդեն պատրաստվում է ընդունվելու կոմերիտմիության շարքերը։ Բայց այդպես չեն վարվել ասֆալտ-բետոնի, երկաթ-բետոնի կոնստրուկցիաների, № 2 ավտոպարկի, Ջկալովի անվան կոշկի ֆաբրիկայի կազմակերպություններն ու կոլեկտիվները։ Գաղութից ազատվելուց հետո Գ. Բալագյոզյանը աշխատանքի է անցնում Ջկալովի անվան կոշկի ֆաբրիկայում որպես բանվոր։ Բայց, չանցած մի քանի ամիս, աշխատանքից հեռացվում է բանվորներից մեկի հետ վեճի բռնվելու համար։ Ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ա. Հովհաննիսյան) փոխանակ Բալագյոզյանին դաստիարակելու, ճիշտ ճանապարհի բերելու, ընդհակառակը՝ վանել է նրան կոլեկտիվից։

Պարտկազմակերպությունները պետք է ավելի բարձրացնեն հասարակայնության դերը աշխատավորության դաստիարակության գործում, աշխուժացնեն ու բարձրացնեն կոմերիտական, պրոֆմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների, ժողովրդական դրուժինաների, ընկերական դատարանների դերը։

Բազմազան են պարտիական պրոպագանդիստական, գաղափարական, քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Պարտիայի Լենինյան շրջկոմի, նրա քաղլուսկաբինետի, մեթոդ-խորհրդի և սկզբնական կազմակերպությունների խնդիրն է՝ խելացի կերպով օգտագործել այդ ձևերն ու մեթոդները, բարձրացնել բոլոր կոմունիստների պատասխանատվությունը, նրանց ակտիվությունն ու նախաձեռնությունը՝ մինչև վերջ կենսագործելու պարտիայի Կենտրոնական Կոմիտեի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումը։

Ս. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ
ՀԿՊ Երևանի Լենինի անվան շրջանի
շրջկոմի քարտուղար

## ՕՐՎԱ ՊԱՀԱՆՋՈՎ

ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի 9-ի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումը կրկին անգամ ընդգծում է այդ բնագավառի կարևոր նշանակությունը կոմունիզմի կառուցման ծավալուն ժամանակաշրջանում։ Պրոպագանդիստական աշխատանքը ստեղծագործ է և չափազանց հետաքրքրական։ Այդ իմաստով էլ ավելի է բարձրանում քաղաքական դաստիարակչական աշխատանք կատարողների դերն ու պատասխանատվությունը։ Այսօրվա ագիտատորը և պրոպագանդիստը պետք է ունենա խոր գիտելիքներ, մտքի թռիչք, ստեղծագործական հարուստ ֆանտազիա, պետք է զգա նորի շունչը, կարողանա շոշափել կյանքի զարկերակը։

Բնորոշը պարտիայի Արտաշատի շրջանային կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ այն է, որ ՍՄԿՊ Կենտկոմի վերոհիշյալ որոշումը կուլտուրայի աշխատողների, երիտասարդության, պրոպագանդիստների, ագիտատորների հավաքներում քննարկելուց հետո ավելի է ուժեղացել պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքը, կիրառվում են քաղաքական աշխատանքի կազմակերպման նորանոր ձևեր ու մեթոդներ։ Այժմ մեզ մոտ քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կազմակերպվում է շերտավորված, հաշվի են առնվում աշխատավորության պահանջները, արտադրության բնույթը և այլն։ Որոշ չափով ընդլայնվել է քաղաքական աշխատանքի ոլորտը։ Այդ նպատակով շրջանի մի շարք գյուղերում պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ անցկացվում են քաղաքական ագիտացիայի ժամեր։

Շրջանային կոմիտեն մշակել է ինտելիգենցիայի, երիտասարդության, պարտիական, սովետական ակտիվի և կոլտնտեսային աշխատավորության շրջանում տարվող աշխատանքի հատուկ պլան, որում մեծ տեղ է հատկացվել պարտիական, տնտեսական շինարարության հարցերին։ Այդ նպատակով կազմակերպվել է հատուկ լեկտորիում, քաղլուս կաբինետին կից ստեղծվել են



գյուղատնտեսության էկոնոմիկան, միջազգային կյանքն ուսումնասիրող սեմինարներ։ Անցկացվել են մի շարք տեսական կոնֆերանսներ։

Երիտասարդությանը ռևոլյուցիոն տրադիցիաների, հայրենասիրության, աշխատասիրության ոգով դաստիարակելու, նրա մեջ լավի և գեղեցկի նկատմամբ հակում ու սեր պատվաստելու գործում կարևոր դեր են խաղում կոլտնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում և շրջկենտրոններում երիտասարդության և հին կոմունիստների, Հայրենական պատերազմի վետերանների, գիտության, տեխնիկայի, գրականության, արտադրության անվանի մարդկանց հանդիպումների կազմակերպումը։

Վերջերս շրջկենտրոնում նկատվում է, որ առանձին երիտասարդներ ցանկանում են մյուսներից տարբերվել իրենց արտասովոր հագուստով, պճնվածությամբ։ Այդ երևույթը հաղթահարելու նպատակով ԼԿԵՄ շրջկոմը կազմակերպեց «Օգտակար խորհուրդների երեկո»։ Երեկոյին երիտասարդների մոտ հյուր էին եկել իրենց ամուսնության 30 տարին բոլորած համերաշխ ամուսիններ Պետրոսյանները, որոնք դաստիարակել և կրթել են շնորհալի զավակներ։ Նրանք երիտասարդներին տվեցին մի շարք օգտակար խորհուրդներ համերաշխ ընտանիք կազմելու, ճաշակով հագնվելու, սենյակ կահավորելու և այլ հարցերի մասին։ Երեկոն ուսանելի էր, և երիտասարդները շատ բան սովորեցին։ Վերջերս կազմակերպվել են մի շարք թեմատիկ երեկոներ, դիսպուտներ՝ «Պատրա՞ստ ես արդյոք ապրել կոմունիստական հասարակարգում», «Ինչպիսի՞ն պետք է լինի կոմունիզմ կառուցող քաղաքացին» և այլ թեմաներով։ Բացի այդ, գործում է երիտասարդական լեկտորիում, ինչպես նաև կազմակերպվում են բազմաթիվ զեկուցումներ ու զրույցներ երիտասարդությանը հետաքրքրող թեմաներով։

Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում ագիտատորների ու պրոպագանդիստների ընտրությանը և նրանց հետ տարվող աշխատանքին, որի շնորհիվ բարելավվել է ագիտատորների և պրոպագանդիստների որակական կազմը։ 104 պրոպագանդիստներից, 633 ագիտատորներից ավելի քան 350-ն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագետներ են մոտ 300 հոգի։

Ագիտատորներին սիստեմատիկ մեթոդական և տեսական օգնություն ցույց տալու նպատակով շրջկոմի քաղլուս կաբինետին կից ստեղծվել է ագիտկոլեկտիվների ղեկավարների մշտական գործող սեմինար. հրավիրվել են ագիտատորների ենթաշրջանային հավաքներ, սեմինար-խորհրդակցություններ։ Շրջանում հայտարարված է ագիտատորի օր, որը նշվում է երեք ամիսը մեկ անգամ։ Այդ միջոցառումների ժամանակ անցկացվում են մեթոդական զրույցներ, զեկուցումներ արտադրության, գիտության և կուլտուրայի նորագույն նվաճումների մասին, լավագույն ագիտատորները հաղորդում են իրենց աշխատանքի փորձը, լույս է ընծայվում «Ագիտատոր» թերթը, կազմակերպվում են ցուցահանդեսներ և այլն։ Այսպես, օրինակ, ագիտատորների օրվան նվիրված հավաքներից մեկում լսվեց զեկուցում «Լինել ագիտատոր, մեծ պատիվ է» թեմայով։ Այնուհետև իրենց աշխատանքի փորձի մասին պատմեցին լավագույն ագիտատորներ Գ. Մարգարյանը (Այգեզարդից), Գ. Այվազյանը (Վ. Արտաշատից), Ջ. Նիկողոսյանը (Արևշատից) և ուրիշներ։ Վերջում ագի-

տատորները բրիգադաներով եղան կոլտնտեսությունների դաշտերում և զրուցեցին տեղի ագիտատորների հետ, կազմակերպվեցին զեկուցումներ, լույս ընծայեցին մարտական թերթիկներ, ինչպես նաև կոլտնտեսականների համար կազմակերպեցին համերգներ։

Ագիտատորների համար կազմակերպվել են զրույց-զեկուցումներ շրջանի էկոնոմիկայի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և այլ թեմաների շուրջ։ Այսպես, վերջերս շրջկոմի հրահանգիչ Վ. Ստեփանյանի նախաձեռնությամբ տեղի ունեցավ իր սպասարկած կոլտնտեսությունների և հիմնարկ-ձեռնարկությունների ագիտատորների, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունք։ Մխչյանի կոլտնտեսության պարտբյուրոյի քարտուղար Ս. Ավետյանը պատմեց իր աշխատանքի փորձի մասին։ Այնուհետև սեմինարի մասնակիցները եղան եգիպտացորենի փորձադաշտում ու լսեցին գիտական աշխատող Ս. Դավթյանի զրույցը՝ եգիպտացորենի սորտերի, դրա մշակության պրոգրեսիվ եղանակների մասին։ Վերջում ցուցադրվեց դոկումենտալ ֆիլմ եգիպտացորենի մշակության մասին։ Սեմինարը նպատակասլաց էր և հետաքրքրական։

Քաղաքական-մասսայական աշխատանքի հետ մեկտեղ սկզբնական պարտիական կազմակերպությունները, շրջանային կոմիտեն մեծ տեղ են տալիս նաև սոցիալիստական մրցության ծավալմանը, աշխատանքի նոր և առաջավոր ձևերի ու մեթոդների պրոպագանդմանն ու արմատավորմանը։ Արդեն 8-րդ տարին է, ինչ Արտաշատի շրջանը մրցում է Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի մարզի Վիսոկոպոլիեի շրջանի հետ։ Երկու տարի սրանից առաջ ընդունվեց նաև Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանի մրցահրավերը։ Այժմ լայն ծավալ է ստացել Արտաշատ—Վիսոկոպոլիե—Մյասնիկյան սոցիալիստական մրցությունը։ Ընդ որում մրցում են ո՛չ միայն գյուղատնտեսության, այլ նաև ժողովրդական կրթության, կուլտուրայի, առևտրի և մյուս բնագավառների աշխատողները։ Այդ մրցությունը տվել է իր ցանկալի արդյունքը. Վիսոկոպոլիեում աճել է շուրջ 1700 հեկտար Արտաշատի խաղող, իսկ Արտաշատի շրջանի անասունների ցեղը զգալիորեն բարելավվել է ի հաշիվ մրցակիցներից գնված կարմիր-տափաստանային ցեղի։ Ամրանում են նաև կուլտուրական կապերը։ Արտաշատում ելույթ են ունեցել Վիսոկոպոլիեի և Մյասնիկյանի շրջանների երգի ու պարի ինքնագործ խմբերը, ինչպես նաև Վիսոկոպոլիեի աշխատավորության համար համերգներ են տվել Արտաշատի շրջանի կուլտուրայի տանը կից երգի ու պարի անսամբլը։ Վերջերս շրջկենտրոնի Ամո Խարազյանի անվան պետական թատրոնը եղավ մյասնիկյանցիների մոտ և նրանց համար բեմադրեց մի քանի ներկայացում, որոնք արժանացան ջերմ հավանության։

Ընթացիկ տարում շրջանի տասնյակ արտադրական բրիգադներ և կոլեկտիվներ պայքարում էին կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու համար. մի շարք առաջավոր բրիգադաների արդեն շնորհվել է այդ կոչումը։

Խրախուսելի աշխատանք կատարեցին Այգեստանի կոլտնտեսության մեխանիզատորներ Ս. Գյուլնազարյանը և Խ. Խաչատրյանը։ Հետևելով Սովետական Միության առաջավոր մեխանիզատորներ Մանուկովսկու ու Գիտալովի օրինակին և եգիպտացորենը մշակելով քառակուսի բնային եղանակով՝ նրանք յուրաքանչյուր հեկտարից ստացան 520 ցենտներ եգիպտացորենի մասսա։



Հաշվումները ցույց տվին, որ այդ եղանակով մշակելիս երկու անգամ ավելի շատ բերք է ստացվում, քան սովորական եղանակով մշակելիս։ Եգիպտացորենի մշակության այդ եղանակը լայնորեն լուսաբանվեց շրջանային «Արտաշատ» և կոլտնտեսային բազմատիրաժ թերթերում։ Կազմակերպվեցին առաջավոր մեխանիզատորների ելույթներ շրջանի ագիտատորների ենթաշրջանային հավաքներում։ Այժմվանից շատ կոլտնտեսություններում նախապատրաստական աշխատանքներ են տարվում եգիպտացորենը քառակուսի բնային եղանակով մշակելու ուղղությամբ։

Շրջանի և ռեսպուբլիկայի ղեկավար կազմակերպությունների ջերմ հավանությանն արժանացավ և մամուլում լայնորեն լուսաբանվեց Շահումյանի կոլտնտեսության պարտիական կազմակերպության անդամ Բարսեղյանի ղեկավարած բրիգադայի՝ «պայքար հարուստ հեկտարի համար» խրախուսելի նախաձեռնությունը։ Այդ բրիգադան, ծավալելով սոցիալիստական մրցություն ի պատիվ ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի, առաջավոր փորձի ներդրման, ագրոտեխնիկայի ու գյուղատնտեսական մեքենաների ճիշտ օգտագործման շնորհիվ ստացավ գյուղատնտեսական կուլտուրաների և, հատկապես, սոխի բարձր բերք (հեկտարից 650 ցենտներ)։ Գ. Բարսեղյանի աշխատանքի փորձը մասսայականացնելու նպատակով հրավիրվեց շրջանի գյուղատնտեսության աշխատողների սեմինար, որի մասնակիցները եղան Գ. Բարսեղյանի բրիգադայում և ծանոթացան նրա աշխատանքին։

Անկասկած, քաղաքական-մասսայական աշխատանքը Արտաշատի շրջանում բարելավվում է, բայց դա գոհացուցիչ չէ։ Առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններում քաղաքական աշխատանքը կրում է ձևական, մակերեսային բնույթ և այն բավարար չափով չի ուղղված կոլտնտեսության, տվյալ ձեռնարկության կոնկրետ խնդիրների լուծմանը։ Այսպես, օրինակ, Դիմիտրովի կոլտնտեսությունն ունի բոլոր պայմաններն ու հնարավորությունները առաջավոր դառնալու համար։ Սակայն այստեղ քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանքի բացակայության հետևանքով ընկած է աշխատանքային կարգապահությունը։ Առանձին կոլտնտեսականներ, դժբախտաբար նաև կոմունիստներ, երբեմն բռնում են անսկզբունք պայքարի ուղին, հարբում և գործում են սովետական քաղաքացուն ոչ վայել արարքներ։ Այս ամենի հետևանքը եղել է այն, որ կոլտնտեսությունը նախորդ տարվա համեմատությամբ բավականին ետ է գնացել։

Շահումյանի, Բզովանի, Նորաշենի սկզբնական պարտիական կազմակերպություններն անհաշտ պայքար չեն մղում մարդկանց գիտակցության մեջ եղած հնի մնացուկների, սոցիալիստական սեփականության հափշտակման, հարբեցողության, սպեկուլյացիայի, կենցաղային այլանդակությունների իսպառ վերացման համար։

Հայտնի է, որ քաղաքական աշխատանքի հաջողությունը մեծ չափով պայմանավորված է մասսաների հետ ունեցած սերտ կապով։ Պարտիական և սովետական ղեկավար աշխատողները քաղաքական զրույցներով ու զեկուցումներով, իրենց կատարած աշխատանքի վերաբերյալ հաշվետվություններով պետք է հաճախ հանդես գան աշխատավորության առջև։ Մինչդեռ Արտաշատի շրջանում առանձին ղեկավար աշխատողներ խուսափում են այդ կարևոր գործից, պատճառաբանելով, որ «չափազանց զբաղված» են։

ՀԿՊ Արտաշատի շրջանային կոմիտեն այժմ լուրջ միջոցներ է ձեռնարկում քաղաքական աշխատանքի հետագա բարելավման համար։ Շրջանային պարտիական ակտիվի որոշմամբ այժմ քաղլուս կաբինետին կից ստեղծված է պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձի լուսաբանման և տարածման խորհուրդ, որը մշակել է մի շարք միջոցառումներ։ Պլանավորված է առաջիկայում կազմակերպել քաղխմբակների բաց դասեր, ուսումնասիրել լավագույն ագիտատորների, ինչպես նաև կազմակերպությունների քաղաքական աշխատանքի դրական փորձը, մասսայական տիրաժով լույս ընծայել կոմունիզմի ծիլերին նվիրված բյուլետեններ։

Հատուկ ուշադրություն է նվիրվելու կանանց շրջանում տարվող աշխատանքներին։ Միայն վերջերս ստեղծված կանանց շրջանային խորհուրդը մշակել է մի շարք միջոցառումներ։ Կանանց և, հատկապես տնային տնտեսուհիներին հասարակական-հանրօգուտ աշխատանքում ակտիվորեն ներգրավելու համար արդեն կազմակերպվել են հանդիպումներ շատ անվանի կանանց հետ։ Առաջիկայում կանցկացվեն որակյալ դասախոսություններ, զրույցներ երեխաների դաստիարակության, խնամքի և հիգիենայի մասին, ընդ որում այդ միջոցառումները կանցկացվեն ո՛չ միայն ակումբ-գրադարաններում, այլև բնակելի շենքերում ու թաղամասերում, կկազմակերպվեն աղջիկների տոներ, զանազան թեմատիկ երեկոներ, կաշխուժացվեն ակումբի գրադարանին կից կազմակերպված կար ու ձևի, տնարարության խմբակների աշխատանքները։ Նշված միջոցառումները, անշուշտ, կնպաստեն քաղաքական-մասսայական աշխատանքում աշխատավորական լայն մասսաների ներգրավմանը։

Արտաշատի պարտիական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ հմտորեն գլխավորել շրջանի աշխատավորների հետ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը, ավելի ընդլայնել դրա ոլորտը և մինչև վերջ կենսագործել ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումներն այդ ուղղությամբ։

Մ. ԴԱՎԹՅԱՆ
ՀԿՊ Արտաշատի շրջկոմի
քարտուղար

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

Ստեղծագործական միությունները սոցիալիստական կուլտուրայի այն հիմնական օղակներն են, որոնք օգնում են ստեղծագործողին, ձևավորում, զարգացնում նրա պրոֆեսիոնալ վարպետությունը։ Այս ուղղությամբ որոշակի աշխատանք են կատարում միությունների պարտիական կազմակերպությունները, որոնք օգնում են գրողներին, նկարիչներին, կոմպոզիտորներին՝ հաղթահարելու և ճանապարհից դեն նետելու այն բոլորը, ինչ արգելակում է սովետական ռեալիստական իսկական արվեստի ու գրականության առաջընթացը, այն, ինչ խանգարում է նրանց պրոֆեսիոնալ հասունությանն ու աճին։

Անժխտելի են սովետահայ գրականության վերջին տարիների նվաճումները, որոնց մասին շատ է գրվել մամուլում։ Գրողներն իրենց ստեղծագործություններում շոշափում են մեր ժամանակի հիմնական հարցերը։ Եթե տարիներ շարունակ խոսվում էր սովետահայ արձակի ետ մնալու մասին,



ապա այժմ այդ բնագավառում բավական հաջողված գործեր կան. երկար ժամանակ մեր արձակագիրներին չէր հաջողվում ստեղծել բանվորի լիարժեք կերպարը. այժմ արդեն ունենք, իր մասնակի թերություններով հանդերձ, հաջողված գործեր։

Չնայած ակներև հաջողություններին, Հայաստանի Սովետական Գրողների միության պարտիական կազմակերպության աշխատանքներում կան լուրջ թերություններ։ Միության պարտիական կազմակերպությունը պետք է սիստեմատիկորեն զբաղվի ո՛չ միայն յուրաքանչյուր գրողի ստեղծագործական, պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացմամբ, այլև նրա գաղափարական հասունության, քաղաքական դաստիարակության հարցերով։ Միության պարտիական կազմակերպությունն այդ կարևորագույն հարցով անբավարար է զբաղվել։ Դրանով պետք է բացատրել այն, որ սովետահայ գրականության մեջ երբեմն դրսևորվում են սովետական արվեստին խորթ ազգային սահմանափակվածության և սնապարծության երևույթներ։

Գրողների միության պարտիական կազմակերպությունը և քարտուղարությունը քիչ են օգնել գրողներին նրանց ստեղծագործական աշխատանքի ընթացքում։ Սկզբունքային առողջ քննադատության միջոցով վերլուծության չեն ենթարկվել մշակվող նյութերը, իսկ քննարկվող նյութերի նկատմամբ հաճախ ցուցաբերվել է հապճեպություն։ Արված դիտողությունները կրել են ձևական, մակերեսային բնույթ։ Այդպիսի վերաբերմունքի հետևանքով երբեմն շատ թերություններով, գաղափարական-գեղարվեստական տեսակետից անավարտ գործը հանձնվում է տպագրության և մատուցվում ընթերցողին։

Մյուս ստեղծագործական միությունը, որը իր վերջին տարիների աշխատանքի ընթացքում առաջընթաց է ապրել, դա Սովետահայ կերպարվեստագետների միությունն է։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի առթիվ կազմակերպված ռեսպուբլիկական և միութենական հոբելյանական ցուցահանդեսները հանդիսացան Հայաստանի կերպարվեստագետների հաջողությունների մասին վկայող ստեղծագործական նոր հաշվետվություններ։ Ցուցադրված գործերը պրոֆեսիոնալ վարպետության տեսակետից արժանացան բարձր գնահատության։ Սովետահայ մի շարք նկարիչների գործերը ճանաչվել ու բարձր գնահատականի են արժանացել նաև մեր երկրի սահմաններից դուրս։

Պարտիայի XXI համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում կազմակերպվեցին գրաֆիկ ու կիրառական արվեստի վարպետների (Հ. Կոջոյանի, Մ. Աբելյանի, Բ. Քոլոզյանի, Գ. Խանջյանի, Ա. Սարգսյանի, Ի. Եսայանի) գործերի ցուցահանդեսներ։ Միության պարտիական կազմակերպությունը նախագահության հետ միասին խոշոր աշխատանք է կատարում կերպարվեստն ավելի լայն պրոպագանդելու և այն ժողովրդական լայն մասսաներին ավելի մոտեցնելու գործում։ Նրանց նախաձեռնությամբ ցուցահանդեսներ են կազմակերպվել Էջմիածնի կոլտնտեսային ակումբում, ալյումինի գործարանում, Լենինականում։ Արտաշատի Ներքին Դվին գյուղի ակումբում կազմակերպվեց ռեսպուբլիկայում գյուղական կերպարվեստի առաջին թանգարանը։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի Հրազդան քաղաքում հիմնադրվեց մշտական գործող ստեղծագործական տուն։

Կերպարվեստագետների միությունը չունի ցուցադրման դահլիճ, որն այն-

քան անհրաժեշտ է նկարիչների գործերը ցուցադրելու, մասսայականացնելու համար: Ցուցահանդեսների համար օգտագործվում են Հայաստանի Պետական պատկերասրահի առանց այն էլ փոքր դահլիճները, որի հետևանքով Պատկերասրահը ստիպված է լինում խախտելու կամ հաճախ ընդհանրապես վերացնելու իր մշտական էքսպոզիցիան: Իսկ կերպարվեստագետների միության նոր տան կառուցումը ընթանում է զարմանալի դանդաղությամբ: ՀՍՍՌ Շինարարության մինիստրությունը ոչինչ չի անում այն արագացնելու համար:

Կերպարվեստագետների միության պարտիական կազմակերպության տեսադաշտից դուրս են մնացել մի շարք ստեղծագործական հարցեր: Օրինակ, կազմակերպված ցուցահանդեսներում աչքի է ընկնում թեմատիկայի միօրինակությունը: Ցուցահանդեսներում գերակշռողը բնանկարն է և նատյուրմորտը: Իհարկե, այս կամ այն ժանրով զբաղվելը նկարչի նախասիրությունն է, սակայն բանն այն է, որ մեր որոշ կերպարվեստագետներ, որոնք անցյալում թեմատիկ ժանրի առումով ավելի բազմազան գործեր են տվել, այսօր սկսել են հրապուրվել միայն բնանկարներով կամ նատյուրմորտով:

Այստեղ խոսքը այս կամ այն ժանրին առաջնություն տալու մասին չէ, այլ այն բանի, որ միայն թեմատիկ կտավի մեջ է, որ արվեստագետը կարող է ավելի քան ընդգրկել մեծ գաղափարներ, անել խոր ընդհանրացումներ: Կոմպոզիցիոն թեմատիկ կտավը արվեստագետից պահանջում է ավելի համառ ու քրտնաջան աշխատանք, քան, օրինակ, բնանկարը. բայց մի՞թե այդ պետք է վախեցնի արվեստագետին: Ընդհակառակը, յուրաքանչյուր նկարչի համար թեմատիկ կտավ ստեղծելը պետք է դառնա նրա պատվի գործը:

Անբավարար աշխատանք է տարվում կիրառական արվեստի զարգացման ուղղությամբ: Մինչև օրս Համամիութենական գեղարվեստական ֆոնդի Հայաստանի բաժանմունքը չի կարողանում բավարար չափով կազմակերպել կիրառական-արվեստական իրերի մասսայական արտադրության գործը: Ձեռնարկություններում թողարկված արտադրանքի գեղարվեստական էտիկետի, գերբերի և շատ ցուցափեղկերի ձևավորումը մեծ մասամբ կատարում են պատահական մարդիկ և ոչ պրոֆեսիոնալ նկարիչներ: Հաճախ ձեռնարկությունների հետ մասնավոր գործարքի մեջ մտնող նկարիչը պատճառ է դառնում հակագեղարվեստական, անճաշակ ձևավորումների:

Բարվոք չէ նաև ռեսպուբլիկայի քաղաքների, շրջանային կենտրոնների և ճանապարհների գեղարվեստական ձևավորման գործը: Կերպարվեստագետների միության պարտիական կազմակերպությունը, նախագահության հետ միասին, պետք է ձեռնարկի այդ չափազանց կարևոր գործի կազմակերպմանը:

Վատ հիմքերի վրա է դրված նաև դպրոցականների գեղարվեստական դաստիարակության գործը: Ռեսպուբլիկայի դպրոցներում նկարչության առարկայի դասավանդումը շատ դեպքերում կրում է ձևական բնույթ, որովհետև պրոֆեսիոնալ նկարիչների փոխարեն նկարչություն են դասավանդում կերպարվեստի հետ ոչ մի առնչություն չունեցող մարդիկ: Նկարչությունը հաճախ դառնում է այս կամ այն դասատուի դրույքը լրացնելու միջոց:

Այս անհանդուրժելի վիճակը վերացնելու և մատաղ սերնդի գեղարվեստական դաստիարակության գործը բարձր հիմքերի վրա դնելու նպատակով անհրաժեշտ է, որ ՀՍՍՌ Լուսավորության մինիստրությունը և Կերպարվեստա-



գետների միությունը լրջորեն զբաղվեն այդ հարցով և ռեսպուբլիկայի դպրոցները ապահովեն նկարչության մասնագետ կադրերով:

Վերջին շրջանում աշխույժ գործունեություն է նկատվում Հայաստանի Կոմպոզիտորների միության աշխատանքներում: Ստեղծվել են բազմաժանր մի շարք գործեր, որոնք բարձր գնահատականի արժանացան թե՛ մամուլում և թե երաժշտասեր հասարակայնության կողմից: Բայց որքան էլ խրախուսելի լինի մեր կոմպոզիտորների աշխատանքը երաժշտական դրամատիկական մեծ կտավի գործեր ստեղծելու ուղղությամբ, այնուամենայնիվ, չի կարելի չխոսել այն մեծ բացի մասին, որ գոյություն ունի մասսայական երգեր ստեղծելու գործում: Սխալ կլիներ ասել, որ մասսայական երգեր չեն գրվում: Սակայն խոսքը լիարժեք բարձրարվեստ երգի մասին է: Ահա այս բնագավառում է, որ մեր կոմպոզիտորները դեռևս ետ են մնում:

Բարձրորակ լավ երգերի պակասը մասնավորապես զգացվում է երգի տոների և մասսայական տոնախմբությունների ժամանակ: Չեն գրվում հատկապես ժանրային, կենցաղային երգեր, քայլերգեր: Էլ չենք խոսում մանկական երգերի մասին: Չնայած ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրությունը մի քանի անգամ կազմակերպել է լավագույն երգերի մրցանակաբաշխություն, սակայն արդյունքները շատ չնչին են:

Մոտենում է Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 40-րդ տարեդարձը: Փառապանծ հոբելյանը պետք է պարտավորեցնի մեր կոմպոզիտորներին՝ ստեղծելու լավագույն մելոդիկ, բարձրարվեստ մասսայական երգեր: Միության պարտիական կազմակերպությանը պետք է լուրջ մտահոգություն պատճառի այս կարևորագույն բնագավառի ետ մնալը:

Մյուս թերությունը, որի վրա անհրաժեշտ է բևեռել Կոմպոզիտորների միության պարտիական կազմակերպության ուշադրությունը, վերաբերում է օպերային ժանրին: Այս ուղղությամբ հաջողություններ կան թե քանակական և թե որակական տեսակետից: Սակայն այդ աշխատանքը բավարար համարել չի կարելի, քանի որ մեծ պոտենցիալ հնարավորություններով օժտված ստեղծագործական ուժերի առկայության պայմաններում փաստորեն քիչ բան է արվում արդիական թեմայով օպերա կամ բալետ գրելու համար:

Կոմպոզիտորը պատճառաբանում է, որ չկա բարձրորակ լիբրետո, տվեք ինձ այն, և ես կգրեմ օպերա: Սակայն նա անտեսում է մի հանգամանք, որ հաջող լիբրետոն մեծ մասամբ ստեղծվում է կոմպոզիտորի կամ գրողի համագործակցությամբ: Իհարկե, բարձր արվեստով օպերա կամ բալետ ստեղծելու գործով պետք է զբաղվի, առաջին հերթին, ինքը՝ կոմպոզիտորը: Այս տեսակետից մեծ անելիքներ ունեն Օպերայի ու բալետի Պետական թատրոնը և Գրողների միությունը, որը, ի դեպ, բավականաչափ փորձ ունի ժամանակակից ինքնուրույն գործեր ստեղծելու բնագավառում: Այս խնդրով պետք է լրջորեն զբաղվի միության պարտիական կազմակերպությունը: Սակայն պարտիական կազմակերպության բյուրոն բոլորովին քննության չի առել այդ հարցը:

Ժամանակակից թեմայով նոր օպերայի ստեղծման գործում մեծ է նաև ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության դերը, որը հեղինակի հետ պայմանագրային փոխհարաբերությունների մեջ մտնելուց և պատրաստի բեմադրությունն ընդունելուց բացի, պետք է սիստեմատիկաբար զբաղվի երաժշտական դրամատիկական գործեր ստեղծելու հարցերով: Ցավոք սրտի, Կուլտուրայի

մինիստրության կազմակերպած մրցանակաբաշխությունները մեծ արդյունքներ չեն տվել։ Անհրաժեշտ է գտնել նաև այլ միջոցներ, ձևեր. գուցե պահանջվում է ստեղծագործական օգնություն ցույց տալ կոմպոզիտորներին, հետաքրքրվել թե ինչպիսի՞ դժվարություններ կան և ինչու՞ է ձգձգվում նոր գործերի ավարտումը։

Մինչև վերջին տարիները մեր դրամատուրգիայի տեսադաշտից դուրս էր մնացել սովետահայ գյուղը։ Անցած երկու թատերաշրջանում այս ուղղությամբ տեղաշարժ կատարվեց։ Գրվեցին մի քանի հաջող պիեսներ, որոնք բեմադրվեցին ռեսպուբլիկայի և Մոսկվայի թատրոններում։ Այս տեսակետից պետք է նշել Սունդուկյանի անվան թատրոնի կոլեկտիվի լավ աշխատանքը։ Եթե անցյալում ավելորդ պսիխոլոգիզմի և մելոդրամայի դեմ պայքարելու պատրվակի տակ փաստորեն մեր պիեսներից հաճախ դուրս էր մղվում կենդանի մարդը, ապա այսօր դրությունն այլ է։ Այդպիսի պիեսներ այժմ համարյա չեն բեմադրվում։ Սակայն ժամանակակից պիեսներում դեռևս լրիվ ու բազմակողմանի կերպով չի արտացոլվում սովետական իրականությունը, չկան մեր հերոսական էպոխայի արժանի, մեծ մասշտաբի կարևոր պրոբլեմներ լուսաբանող պիեսներ։

Ժողովրդի կյանքն անհամեմատ ավելի հարուստ է, քան այն տեսնում են դրամատուրգները։ Շատ դեպքերում նրանք չեն կարողանում արտացոլել կյանքը, և պիեսում ստեղծվում է հնարովի արհեստական միջավայր, որը շատ հեռավոր նմանություն ունի իրականության հետ։ Կյանքը ճանաչելու նպատակով գրողը հաճախ մեկնում է որևէ արդյունաբերական ձեռնարկություն և սկսում ուսումնասիրել կյանքը։ Նման ուսումնասիրությունն անհրաժեշտ է, բայց բավական չէ։ Բանն այն է, որ յուրաքանչյուր ստեղծագործող պետք է գիտակցի, որ կյանքը նաև իր՝ դրամատուրգի մեջ է։ Խոսքը կարող է վերաբերել միայն միջավայրի յուրահատկությանը՝ սպեցիֆիկային, որը և պետք է կարողանա տեսնել և ճիշտ ընկալել դրամատուրգը։

Մեր կյանքը արագ թափով առաջ է ընթանում։ Մեր երկիրը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման առաջին յոթնամյակը։ Սովետական ժողովրդի համար վաղվա օրը բացվում է ավելի վիթխարի պլաններով, որոնց կենսագործողը սովետական մարդն է։ Մեր դրամատուրգիայի առանցքը պետք է դառնա այսօրվա մարդն իր հարուստ ներքնաշխարհով, իր մտորումներով։ Առանց ժամանակակից կյանքն արտացոլող պիեսի և ներկայացման, անհնար է խոսել որևէ թատրոնի հաջողության և առաջընթացի մասին։

Ն. Ս. Խրուշչովը Գրողների միության III համագումարում իր արտասանած ճառի մեջ, դիմելով գրողներին՝ ասում է. «Ձեր ստեղծագործություններում արտացոլեք այն մեծ գործերը, որ կատարում են ժողովուրդը, հասարակ մարդիկ։ Հարկավոր է, որ այդ մարդկանց մասին իմանան, նրանց լավ տեսնեն, որպեսզի նրանք օրինակ լինեն բոլոր նրանց համար, ովքեր Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարում են կոմունիստական հասարակարգի կառուցման համար...»։

Հայաստանի ստեղծագործական միությունների պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ մեծ պատասխանատվությամբ զբաղվել գրողների և արվեստագետների պրոֆեսիոնալ վարպետության բարձրաց-



ման, նրանց պարտիականության ու գեղարվեստական խորաթափանցության, նրանց աշխարհըմբռնողության հարցերով։

Պարտիական կազմակերպությունները պետք է բոլոր ստեղծագործողներին ներգրավեն միությունների աշխատանքներում, ապահովեն կոմունիստների ավանգարդային դերը, պայքարեն ազգային սահմանափակվածության, լիբերալիզմի դեմ։ Նրանք պետք է օգնեն ստեղծագործողներին՝ հասնելու այն բանին, որ նրանց բոլոր գործերում խոր դրսևորվի սովետական մարդկանց բազմահարուստ կյանքը։

Գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիայի աշխատողների և մյուս ստեղծագործական միությունների պարտիական կազմակերպությունների կապը լայն մասսաների հետ ապահովելու նպատակով պետք է կազմակերպել ազատ ստեղծագործական դիսկուսիաներ, ցուցահանդեսներ, զեկուցումներ, դասախոսություններ։ Այդ միջոցառումները, անշուշտ, մեծ չափով կնպաստեն ստեղծագործական միությունների հետագա զարգացմանը։

Լ. ԱՐԱՄՅԱՆ

## ՄՇՏԱԿԱՆ ԳՈՐԾՈՂ ՍԵՄԻՆԱՐ

Երեկոյան ժամը 7-ն է։ Սեմինարավարը ստուգում է հաճախման ցուցակը և հայտարարում է պարապմունքն սկսված։

— Ինչպես գիտեք, պարապմունքի թեման է «Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը և նրա կառուցվածքը»։ Աշխատեք օրինակներ բերել ձեր ձեռնարկություններից, ավելի շատ խոսել դեռևս չօգտագործված ռեզերվների մասին,— ասում է սեմինարավարը։

Մի պահ լռություն է տիրում։ Ձեռք են բարձրացնում առաջին ցանկացողները։ Սեմինարավարը ձայնը տալիս է գուլպայի ֆաբրիկայի դիրեկտոր Ծ. Ղահրիմանյանին։

— Ամեն մի ֆաբրիկայում, գործարանում,— ասում է նա,— լայն հնարավորություններ կան թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար։ Մեզնից յուրաքանչյուրը գիտե, որ ինքնարժեքի իջեցման հիմնական նախապայմանը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Ես ավելորդ չեմ համարում հիշեցնել, որ արտադրանքի ինքնարժեքը արդյունաբերական ձեռնարկության գործունեությունը բնորոշող կարևոր ցուցանիշ է։ 1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը մեր ֆաբրիկայում իջել է 3,8 տոկոսով։ Միայն այդ ճանապարհով ստացված օգուտը կազմեց 980 հազար ռուբլի։ Այդ նվաճումը հիմնականում ձեռք բերվեց նոր տեխնիկայի արմատավորման և խնայողության ռեժիմի կիրառման շնորհիվ։

— Հարկավոր է որակի մասին մտածել,— ընդհատում է մանվածքային ֆաբրիկայի դիրեկտոր Գ. Հովսեփյանը։

— Ճիշտ է, այդ հարցում մեզ մոտ թերություններ կան։ Առայժմ զգալի չափերի հասնող տուգանքներ ենք վճարում, սպառողների բողոքներ նույնպես

կան։ Ինչ խոսք, որ արտադրանքի որակի բարձրացումը մեծապես կնպաստի ինքնարժեքի իջեցմանը։

Ապա արտահայտվում են արդյունաբերական ուրիշ ձեռնարկությունների տնտեսական և պարտիական ղեկավար աշխատողներ։ Արտադրական-արդյունաբերական կոմբինատի պարտբյուրոյի քարտուղար Զ. Սարգսյանը խոսում է արտադրանքի ինքնարժեքի պլանավորման մասին։ Իրենց ձեռնարկության օրինակով նա ցույց է տալիս, թե ինչպես առանձին դեպքերում վերադաս օրգանները ճիշտ չեն պլանավորում արտադրանքի ինքնարժեքը, հաշվի չեն առնում նրա առանձին ցուցանիշները։ Կահույքի ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Ա. Ռեազովը խոսում է նոր տեխնիկայի արմատավորման, ձեռնարկությունների մասնագիտացման ու կոոպերացման անհրաժեշտության մասին։

Վերջում խոսում է Քաղսովետի պլանային հանձնաժողովի նախագահ, սեմինարի ղեկավար Ս. Ղազարյանը։ Նա ասում է. այստեղ սեմինարի մասնակիցները կոնկրետ օրինակներով ցույց տվեցին արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները։ Սակայն դա հարցի միայն մի կողմն է։ Պարտիան և կառավարությունը պահանջում են համաժողովրդական արշավ կազմակերպել անտնտեսավարության, շռայլման, ժողովրդական բարիքի հափշտակման դեմ։ Թե ինչ է տալիս արտադրանքի ինքնարժեքի մեկ տոկոս իջեցումը, կարելի է ցույց տալ մեր քաղաքի ամենախոշոր ձեռնարկություններից մեկի՝ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի օրինակով։ Ի՞նչ է նշանակում կոմբինատում արտադրանքի ինքնարժեքը իջեցնել մեկ տոկոսով. այդ նշանակում է տնտեսել ավելի քան 2 միլիոն ռուբլի, կամ ավելի պատկերավոր ասած՝ խնայել 90 տոննա բամբակ, 15 տոննա զանազան ներկեր ու քիմիական նյութեր։ Մեկ տոկոս վառելանյութի խնայողությունը հնարավորություն կտա բանվորական ավանի բնակելի շենքերը տաքացնել 2 ամիս։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել։

Վերջում ուզում եմ ձեզ կրկին ասել այն մասին, որ արտադրանքի ինքնարժեքը ձեռնարկության աշխատանքի որակի հիմնական ցուցանիշն է։ Վերջին հաշվով այդ ցուցանիշի մեջ են արտահայտված ամեն մի ձեռնարկության կոլեկտիվի արտադրական-տնտեսական գործունեության ամբողջ արդյունքները։

Որպես կանոն, սեմինարավարի ելույթից հետո բազմաթիվ հարցեր են լինում։ Միշտ ունկնդիրներն ստանում են դրանց սպառիչ պատասխանը։

— Հաջորդ պարապմունքի թեման է «Տնտեսական հաշվարկը արդյունաբերական ձեռնարկություններում»։

Միշտ այսպես, հետաքրքրական ու բովանդակալից են անցնում ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեին կից տնտեսական, պարտիական և սովետական ակտիվի մշտական գործող սեմինարի պարապմունքները։ Նրա մասնակիցները, որոնց թիվը հասնում է 60-ի, արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորներ, գլխավոր ինժեներներ, պարտիական կազմակերպությունների քարտուղարներ և սովետական աշխատողներ են։ Սեմինարի մասնակիցները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան, ստացած գիտելիքները հմտորեն կիրառում պրակտիկ աշխատանքում։ Սեմինարի մասնակիցների ակտիվությունն ու նախաձեռնությունը բարձրացնելու նպատակով օգտագործվում են նյութի մատուցման բազմապիսի ձևեր, պարապմունքի թեման սերտորեն կապվում է քաղաքի արդյունաբերության, առանձին ձեռնարկությունների առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Տնտեսական ղեկավարների պատրաստականության, արտադրության էկոնոմիկան հասկանալու մասին է խոսում այն փաստը, որ ունկնդիրներից շատերը հանդես են գալիս ռեֆերատով, վերլուծում են սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունների էկոնոմիկային վերաբերող առանձին հարցեր։



Մշտական գործող սեմինարի հաջողությունն, առաջին հերթին, արդյունք է սեմինարի ղեկավար Ս. Ղազարյանի լավագույն աշխատանքի։ Օգտագործելով պրոպագանդիստական աշխատանքի բազմապիսի ձևեր, նա հասնում է այն բանին, որ սեմինարի ամեն մի ունկնդիր լավ է յուրացնում նյութը։ Ինքը՝ սեմինարավարը, յուրաքանչյուր պարապմունքի նախապատրաստվում է բազմակողմանիորեն, օգտագործում է համապատասխան պլակատներ, դիագրամաներ և դիդակտիկ այլ նյութեր։ Եվ որպեսզի սեմինարում քննարկվող թեման ավելի գործնական լինի և նպաստի ունկնդիրների ակտիվ մասնակցությանը, Ս. Ղազարյանը բազմաթիվ կոնկրետ փաստեր է բերում քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններից։

Քննարկվող թեմայի խոր ուսումնասիրմանը, կադրերը տնտեսական գիտելիքներով զինելուն, պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողների ակտիվության բարձրացմանը մեծ չափով նպաստում է անհատական հանձնարարություններ տալու պրակտիկան։ Այդ է ցույց տալիս «Ձեռնարկության արտադրական-տնտեսական գործունեության վերլուծումը» թեմայի մասին դարբնոցա-մամլիչների սարքավորումների գործարանի դիրեկտոր Ս. Մանուկյանի ռեֆերատը։ Պատմելով արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպման, հիմնական ֆոնդերի, արտադրական կարողությունների օգտագործման մասին, նա վերլուծեց գործարանի 1959 թվականի բալանսը և տվեց ինքնարժեքի իջեցման, եկամտաբերության բարձրացման աղբյուրները։

Վերջին շրջանում սեմինարի հիմնական թեմաները սերտորեն կապվում են ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների հետ։ Եվ պատահական չէ, որ արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներն այժմ ավելի մեծ ուշադրություն են նվիրում նոր տեխնիկայի արմատավորման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, տեխնոլոգիայի կատարելագործման հարցերին։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների անցած տարվա աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ կադրերի տնտեսական և տեխնիկական գիտելիքների բարձրացման գործում մեծ է մշտական գործող սեմինարի դերը։ Սեմինարում ընդգրկված ղեկավար աշխատողները սոցիալիստական արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրելու հետ միասին վերլուծության են ենթարկում առանձին ձեռնարկությունների գործունեությունը, բացահայտում աշխատանքի այս կամ այն բնագավառում տեղ գտած թերությունները, ուղիներ նշում դրանց վերացման համար։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

վատից հուրհրատում էին նրա պայծառ, իմաստուն, թուխ աչքերը: Ինչե՜ր չէին տեսել ու կգացել այդ աչքերը այս վերջին օրերին: Տուն ու ընտանիք մոռացած, Բագրատը իսկական պինվոր էր դարձել: Գիշեր-ցերեկ դուրս չէր գալիս զորանոցներից: Շարքայինների հետ այնքան էլ դժվար չէր լեզու գտնել: Բայց միայն շարքայինը ի՞նչ կարող էր անել: Հրամանատարությունը, սպայակազմը նույնպես պակաս դեր չէր խաղալու ո՛չ միայն հեղաշրջման մեջ, այլև գալիք կռիվներում: Եվ նա գործում էր, համոզում շարքայիններին, հեղաշրջում հիմնական ուժը՝ բանակը, որ սրանցից ազդվելով ու ճնշվելով, ապստամբության կողմն անցնեին նաև սպաները: Ու անցան... Կայազորի հրամանատար, գեներալ Խաչատուրովն անցավ: Անցան առաջին հայկական հեծյալ գնդի պինվորները՝ Հովհաննես Բաղրամյանի գլխավորությամբ:

— Ոչ մի բան ազատությունից թանկ չէ: Նրան նվիրենք մեր ամբողջ ուժն ու կորովը: Իսկական, մարդավայել կյանք ստեղծենք մեր արդար քրտինքով, մեր բազուկներով: Պաշտպանենք մեր օջախների պատիվը անարգ դաշնակներից: Պատրաստ լինենք մահու և կենաց կռվի: Թե հարկ լինի՝ մեր արյամբ ներկենք հայրենի հողը, բայց չնահանջենք: Սարի պես մեր թիկունքին կանգնած են Մոսկվան ու Ռուսաստանը, Կարմիր Բանակը: Նրանք կհասնեն օգնության:

Զորանոցները դատարկ էին: Այս ու այնտեղ, շենքերի առջև երևում էին հատ ու կենտ պինվորներ, որոնք խաղում էին ուսադիրների հետ: Կալանավորված սպաների ուսադիրներն էին դրանք: Ապստամբներին չմիանալով, նրանք չեկոքացվել էին, կամ «ազնիվ խոսքով» ազատ արձակվել: Այդքան մարդասեր էր նոր իշխանությունը, որը դեռ աշխարհ գալու առաջին ճիչն էր ավետում մայիսին:

Սպառազեն շարքերով բոլորը մեկեն շարժվեցին դեպի քաղաքի կենտրոնական հրապարակը՝ միանալու մյուս ապստամբներին: Առջևից գնում էր Բագրատը: Ճանապարհին պինվորականները, մոտակա գյուղերի գյուղացիները միանում էին կորամասերին:

Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան պարտիական կոմիտեն գործում էր: Եռանդուն, նվիրված կերպով գործում էին կոմիտեի անդամներ Բագրատ Ղարիբջանյանը, Եգոր Սևյանը և մյուսները: Ալեքպոլում գործում էր Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն, որը Հայաստանում հռչակեց Խորհրդային իշխանություն:

Կարմիր բոցը բռնկեց լեռնագագաթներին ու արտացոլվեց ձորերում:

Դաշնակցականների կառավարությունը կանգնեց ահեղ իրականության առջև: Նա փորձեց խափանել ապստամբների կապերը, մեկուսացնել ռևոլյուցիոն օջախները և մեկ-մեկ մարել խարույկները: Առաջին հերթին նա հարվածն ուղղեց կարմիր Ալեքպոլի դեմ, որը մայիսյան ապստամբության օրրանն էր: Դաշնակ սեպուհի կորքերն արշավեցին՝ ճնշելու ապստամբությունը:

Տենդային օրեր էր ապրում քաղաքը: Հարավ-արևմուտքում զորքերը գիշեր-ցերեկ խրամատներ էին փորում, պատրաստվում, տեղադրում ծանր թնդանոթներն ու գնդացիրները:

— Երգելո՞ւ են, ընկեր Ղարիբջանյան,— պինվորները դիմում էին Բագրատին՝ մատնացույց անելով հրանոթները:

— Լավ կլինի, եթե բոլորովին չլսենք սրանց երգը: Մենք չենք սիրում այդ երգը: Բայց թշնամին ծարավի է սրանց երգին էլ, համերգին էլ: Պատրաստ լինենք:

***

Ոչ մի օր կրահագնացքն այնպես ահարկու և միաժամանակ նրա սառը պողպատն այնպես ջերմ չէր թվացել, ինչպես այդ երեկո: 1920 թվականի մայիսի 13-ն էր: Երեք օր էր, ինչ Ալեքպոլը սովետական էր: Զրահագնացքում տեղի էր ունենում Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նիստ: Մասնակցում էին նաև ապստամբ պինվորների ու բանվորների ներկայացուցիչները:

Սեպուհն իր բանակն էր դրել քաղաքի մոտ, հյուսում էր իր ոստայնը: Նա եկել էր դաշնակցական կառավարության հրամանով: Եկել էր՝ ջարդելու և սպանելու, կոտորելու և կողոպտելու, բնաջնջելու կարմիր ծիլերը:

Եվ բոլշևիկները կրահագնացքում մտածում էին: Դեպքերի ընթացքը նրանց կանգնեցրել էր լինել-չլինելու առաջ: Կամ անձնատուր լինել, կամ բարձր պահել ալ դրոշը և բոցի նման նետվել առաջ, չափվել թշնամու ուժերի հետ, ջարդել նրանց:

— Հաշտության, պինաթափման մասին ոչ մի խոսք չի կարող լինել: Կկռվենք ու կռվելով կըմեռնենք,— ասում էր Բագրատ Ղարիբջանյանը: —Բաղրամյանի գունդը, որը կրահագնացքին հավատարմության երդում է տվել, մարտական դիրքեր է գրավել և սպասում է հարձակման հրամանի: Ինչո՞ւ ենք սպասում: Մինչև ե՞րբ սպասենք:

Բագրատը փոխվել էր: Տարիների ռևոլյուցիոն աշխատանքը, պինվորների հետ ունեցած շփումը նոր մարդ էին դարձրել նրան: Չնայած ջահել հասակին (նա դեռ երեսուն տարեկան չկար), նա հայտնի էր որպես տեսականորեն պատրաստված ռևոլյուցիոներ: Ահա թե ինչու նա այնպես հավատով ու համոզված կռվի էր կոչում: Զինվորների հոգին, բանվորների սիրելին էր նա:

Խոսեցին և ուրիշները: Խոսեցին պինվորները: Որոշվեց դիմադրել, կռվել, չնահանջել: Սակայն կոմիտեն հապաղում էր, մարտական գործողությունների չէր անցնում: Իսկ դաշնակների օղակը գնալով սեղմվում էր:

Եվ այսպես էլ կարմիր զորքերը հարձակման չանցան: Սեպուհը ներխուժեց քաղաք: Սկսվեց հաշվեհարդարը: Համատարած կողոպուտն ու սպանությունները վերջ չունեին: Բանտերը նետեցին Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի և Ալեքպոլի բոլշևիկյան կոմիտեի ղեկավարներին՝ Ղարիբջանյանին, Սևյանին, Մուսայելյանին և շատ ուրիշների:

Բանտում և դատարանում Ղարիբջանյանն իրեն պահեց այնպես, ինչպես վայել էր իսկական կոմունիստին, ռևոլյուցիայի պինվորին:

Ալավերդյանը, Մուսայելյանը և Ղարիբջանյանը բանտից նամակ գրեցին ազատ մնացած կոմունիստներին: Նրանք գիտեին, որ մեռնելու են: Բայց վախենո՞ւմ էին մահից, ափսոսո՞ւմ էին, ցավո՞ւմ, որ բռնել են ռևոլյուցիայի փշոտ ճանապարհը՝ ժողովրդի ազատագրության ճանապարհը: Ո՛չ: Նամակի յուրաքանչյուր տողը այդ է հաստատում. «Մենք զգում ենք, որ մեզ տանում են գնդակահարության: Համոզված եղեք, որ մենք համարձակ և անվախ նայում ենք մահվան երեսին: Մենք մեզ բախտավոր ենք համարում, որ նահատակ ենք լինում հանուն կոմունիստական ռևոլյուցիայի: Թող մեր մահը ձեր ուժերը եռապատկի, ոչ մի թուլամորթության տեղիք չտաք: Մենք համոզված ենք. դրանով բախտավոր, որ... կոմունիստական ռևոլյուցիայի ձայնը ոչ միայն չի լռի, այլ ավելի և ավելի կուժեղանա:

Ուրեմն, թանկագին ընկերներ, մնաք բարով. շարունակեցեք ձեր գործը ընդդեմ կապիտալիստական աշխարհի»:

Իսկապես, մայիսյան ապստամբության առաջնորդներին մահ էր սպասում: Ասես առանց նրանց սուրբ արյան չէր բացվելու նոյեմբերյան արշալույսը՝ նրանց արյան նման կարմիր և սուրբ, նրանց արյան նման տաք ու հուրհրան:

1920 թվականի օգոստոս... Գնդակահարության էին տանում մայիսյան ապստամբության խիզախ հերոսներին:

— Դահիճնե՛ր, կատարյալ դահիճնե՛ր, գողի նման խավարի մեջ գործող ավազակներ,— մահապարտների խցում խորհում էր նա: Վախենո՞ւմ եք բանտարկյալներից: Իհարկե, եթե չվախենայիք, չէիք խաբի, թե ուրիշ բանտ եք փոխադրում: Դուք սպանեցիք մեր նվիրական ընկերներին... Ողորմելինե՛ր: Ես տարիներ առաջ եմ դարձել մեծ Լենինի բանակի պինվոր: Այդ ուղուց վերադարձ չկա: Դուք սպանեցիք Եգոր Սևյանին: Սպանեցիք Հովհաննես Սարուխանյանին. սպանեցիք գավանաբար, հոշոտելով, ծիերից կապելով: Ով լսել էր և չէր հավատում, թե ովքեր եք դուք, տեսավ այդ ամենը ու դարձի է գալիս՝ դառնում է հեղափոխության պինվոր: Սպանեցեք մեզ, բայց երկիրը սպանել չեք կարող: Բոլորին չեք կարող սպանել: Ժողովուրդը նորից կպարզի ալ դրոշը, որի շողերը կմոխրացնեն ձեզ ու ձեր խմբապետական կարգերը: Ձեր նմանները և դուք տապալեցիք Բաքվի կոմունան: Այն ընկավ երկու տարի առաջ: Ընկավ մեր սքանչելի ընկերը՝ Ստեփան Շահումյանը: Բայց հաղթեց Շահումյանը: Հաղթեց հեղափոխությունը:

Երբ նրան դուրս էին բերում բանտից, մի կալանավոր կսկիծով ասաց.

— Տարան վերջին արծվին, բայց արծիվները չեն մեռնում:

Տարան Ղարիբջանյանին ու գնդակահարեցին: Սակայն նրա մարգարեական խոսքերը հնչում էին իբրև պայքարի կոչ, համախմբելով մնացածներին՝ ամրապնդում, ուժ ու եռանդ ներարկում նրանց:

— Հայաստանի հողը մեր արյունով կներկվի և կդառնա կարմիր: Մի՛ մոռանաք իմ խոսքերը՝ Հայաստանը սովետական կդառնա:

Կեցցե՛ Սովետական Հայաստանը:

Մ. ՆԱՐՅԱՆ

# ՀԱՂԹՈՒԹՅԱՆ ԱՅԳԱԲԱՑԻՆ



Ստեփանը Մոսկվա էր եկել երկրի հեռավոր մի գավառից, բայց ոչ գավառացու մտքերով ու հասկացողություններով, այլ իբրև աշխարհի չարն ու բարին խորապես ըմբռնող մի երիտասարդ:

Ահա թե ինչու տեսածի արտաքին փայլով նա չէր շլանում, ինչպես լինում է սահմանափակ ու չտես գավառացիների հետ, որոնք երազում են ինչպե՛ս էլ լինի սողալ վերին ոլորտները:

– Նա ելել էր «ստորին խավերից»: Ծնվել էր Քութայիսիում, 1888 թվականին: Հայրը մետաքսի գործարանի համեստ հաշվային աշխատող էր, ընտանիքը բաղկացած 11 հոգուց, և ընտանիքի կրտսերը, թեև ամենքից սիրված, բայց մինչև տասը տարեկանը անգրագետ, խաղընկերների հետ վազվզում էր բակում, ձեռքերը, ոտքերը և լեզուն հավասար ճարպկությամբ գործի դրած:

Նրան նկատեց, նրանով հետաքրքրվեց մի վրացի վարժուհի և հանձն առավ Ստեփանին գրաճանաչ դարձնել: Բայց պատանու հառաջադիմությունը վարժուհուն թելադրեց ավելին անել՝ պատրաստել նրան և օգնել տեղի ռեալական դպրոցն ընդունվելու, որը և հաջողվեց:

Տակավին պատանի, դեռևս ռեալական դպրոցի սան, նա նետվեց կյանքի հորձանուտի մեջ:

Երբ հինգ թվի ռևոլյուցիայի բոցերը հրդեհեցին նավթային Բաքուն և ճարճատելով տարածվեցին Անդրկովկասում, Ստեփանը մեկն էր նրանցից, որոնք այդ հրդեհը մի առանձին ուժով ու տևական արծարծեցին Քութայիսիում:

Նա Մոսկվա եկավ ժամանակի առաջավոր գաղափարների մի այնպիսի պաշարով, որի մոտ գավառացիներ էին վերին խավի շատ փափկասուն երիտասարդներ, որոնց այնպես արհամարհում և առիթը բաց չէր թողնում ծաղրելու, ձաղկելու նրանց սահմանափակությունը, կուրությունը, այն փայլուն կեղևը, որի ներսում տաք վառարանի մոտ մրափող կատվի բավականությամբ, ինքնասիրահար ու միաժամանակ անօգնական, վտիտ հոգիներ էին ծվարած: Դրանք նրա աչքում ապագա այն «մտածողներն» էին, որոնց նմաններն այսօր իրենց շքեղ հարկաբաժիններում լայնորեն տարածված, ամեն օր կուշտ ճաշելուց հետո ճոճաթոռում ընկղմված, որոճում են գրքեր, բրոշյուրներ, գողանալով սեփական կամ ուրիշների վաղուց մաշված մտքերը, բոլորովին անգիտակ, որ աղքատ ուսանողը դրա համար վճարում է իր օրվա ապրուստի այն կոպեկները, որ նա ձեռք է բերում կայարաններում վագոններ բեռնաթափելով, կամ պարկա առավոտները փողոցներում վազվզելով ու պատերին աֆիշներ սոսնձելով:

Նրանք չգիտեին, թե ինչ կա իրենց քթից այն կողմ, հպարտանում էին բնիկ մոսկովցի լինելով և Խիտրովկայի մասին միայն լսել էին, այնքան գիտեին, որ այդ թաղամասն ընկնելը սարսափելի է, որ այնտեղ ապրում են սարսափելի մարդիկ, որոնք փայտոջիլների պես ցերեկներն անհետանում են որջերում, իսկ գիշերները կատարում ոճիրներ:

Չգիտեին թե ի՛նչ է կատարվում բանվորական թաղամասերում, ի՛նչ են ներկայացնում իրենցից այդ թաղամասերը:

Ստեփան Ալավերդյանն իր մոսկովյան կյանքի յոթը տարիների ընթացքում այնպես ճանաչեց այդ քաղաքը՝ իր բոլոր ծակուծուկերով, թափանցեց նրա բոլոր խավերի կյանքի մեջ, ապրեց Զամոսկվորեցկի բանվորական թաղամասում, մտերմություն հաստատեց նրա բնակիչների հետ, չխորշեց նաև Խիտրովկայից, մտավ ու ելավ նրա բոլոր որջերը, և այն խոր գիտելիքների օգնությամբ, որ ձեռք էր բերում ուսումնառության ընթացքում, կարողացավ բարձր գիտական մակարդակով ուսումնասիրել և գրել «Բնակարանային հարցը Մոսկվայում» աշխատությունը:

Դա հանդիսացավ նրա դիպլոմային աշխատանքը, որը փայլուն կերպով պաշտպանեց՝ ստանալով գիտական աստիճան: Այդ ուսումնասիրության մեջ նա վերլուծում և ցույց էր տալիս, թե լայն կանգվածների բնակարանային անմարդկային վիճակը անխուսափելիորեն պատճառ է դառնում ամեն տեսակ հասարակական չարիքի՝ տարափոխիկ հիվանդությունների, հարբեցողության, անբարոյականության, գողությունների, սպանությունների. բաներ, որոնց մասին «բարձր» խավի ընտանիքներում անպատշաճ էր նույնիսկ խոսել, թեև այդ երեսպաշտությունը արգելք չէր լինում, որ դադարեր գոյություն ունենալ այն, ինչ գոյություն ուներ:

Նույն երեսպաշտության ծնունդ հանդիսացավ «հայրենասիրական» այն շարժումը, որ ծավալվեց համաշխարհային առաջին պատերազմը ծագելու հետ:

Սանձազերծված պատերազմի հետ սանձազերծվել էին շովինիստական ու նացիոնալիստական կրքերը: Ուսանողության մեջ դրանց օջախներն էին հանդիսանում տարբեր ազգերի երիտասարդության հայրենակցությունները: Ալավերդյանի հոգուն խորթ էին դրանք: Նա հանդես էր գալիս և գործում երիտասարդական ինտերնացիոնալ կազմակերպություններում:

Երբ հայ կամավորական շարժումը իր արձագանքը գտավ Մոսկվայում, Ալավերդյանն ամբողջ հոգով ծառացավ դրա դեմ, նախազգալով այն աղետները, որոնք և իրոք հետևեցին դրան: Արտակարգ սրամիտ ու կրակոտ հռետոր Ստեփան Ալավերդյանը, հանդես գալով ուսանողական ու բանվորական միտինգներում, իր բոլոր ճառերն ավարտում էր. «Կորչի՛ իմպերիալիստական պատերազմը», «Կեցցե՛ դասակարգային պատերազմը» կոչով:

Ուսումն ավարտելուց անմիջապես հետո նա հայրենիք վերադարձավ և Քութայիսիում, ապա և Թիֆլիսում մի կարճ ժամանակ մնալուց հետո, աշխատանքի ուղարկվեց Սարիղամիշ:

***

— Զինվորների համար ծանրոցներ են ստացվում, իսկ շուն-շանորդի երկաթուղայինները մեկ տալու տեղ, իրենք են խժռում սրիկաները, մի մասն էլ քոռ ու փուչ անում, լցնում գետը, որ հետքերը կորցնեն... Է՜յ, զինվորնե՛ր, լսո՞ւմ եք, իսկ մենք գալարվում ենք քաղցից, խկապես սատկում ենք...

Զինվորների գորշ ամբոխը շարժվում է դեպի կայարան:

— Շուն-շանորդի սրիկանե՛ր, գողե՛ր, ավազակնե՛ր... ձեր դատաստանը ինքներս կտեսնենք, սեփական բռունցքներով ու սապոգներով:

Կայարանում սկսված արյունահեղության մասին զեկուցեցին հրամանատարությանը... Վերջինս հապաղում էր վճիռ ընդունել:

Կայարանում ոստիկանության հետքը չկար... Եվ կոպիտ սապոգները անարգել տրորում էին պատահած երկաթուղայիններին, անասնական գոռում-գոչյունի, ճիչ ու աղաղակների տակ, երբ մի երիտասարդ սեպի պես խրվելով գազանացած ամբոխի մեջ, հուժկու ձայնով որոտաց:

— Զինվորնե՛ր, մի թաթախվեք ձեր եղբայրների անմեղ արյան մեջ, զինվորնե՛ր, խաբե՛լ են ձեզ, ձեր արդար կայրույթը իսկական թշնամուց հեռացնելու համար...

Այդ ահեղ ձայնի առաջ ամբոխը ոչ անմիջապես, բայց տեղի տվեց... Կրակե կարկուտ էր տեղում Ալավերդյանը խոսքերի տեղ, և զինվորները սարսուռով լսում ու ետ-ետ էին գնում, թողնելով այստեղ ու այնտեղ տապալված ու տրորված զոհերի մարմինները, որոնցից ոմանք ուշագնաց էին, ոմանք խուլ տնքում էին, իսկ երիտասարդ բանվոր Բուրջալիձեն հավիտյան փակել էր աչքերը:

...Հետևյալ օրը Սարիղամիշի ամբողջ կայազորը և բոլոր բանվորները գլխահակ հուղարկավորում էին Բուրջալիձեին:

Երիտասարդ բանվորի թարմ շիրմի առաջ Ալավերդյանի արտասանած դամբանական խոսքը նրանք լսում էին սրտի կսկիծով և, իբրև պատասխան այդ խոսքերի, յուրաքանչյուրն ինքն իր մեջ երդվում էր՝ վրեժխնդիր լինել Բուրջալիձեի համար, նրա համար, որ անմեղ արյունով թաթախվեցին իրենց ձեռքերը... կռվե՛լ, անողոք կռիվը հասցնե՛լ վախճանին...

Սարիղամիշի կայազորն ու բանվորները, հանձին Ալավերդյանի արդեն ճանաչել էին իրենց հմուտ ղեկավարին: Մեկը մյուսին հաջորդող գլխապտույտ դեպքերի հորձանուտում նա տանում էր նրանց իր ետևից, ամեն անգամ անսխալ կողմնորոշելով նրանց վարքագիծը:

Երբ Ռուսաստանում հաղթանակած ռևոլյուցիայի լուրը հասավ այստեղ, Սարիղամիշի կայազորն իր միտինգում, որին նախագահում էր Ալավերդյանը, իրեն հայտարարեց Ռուսաստանի Ժողովրդական Կոմիսարների Սովետի տրամադրության տակ, իր միակ առաջնորդը ճանաչելով Լենինին:

Անդրկովկասում մեկը մյուսին հաջորդեցին ա–

ռավել խառը ժամանակներ: Անհրաժեշտ եղավ, որ Ալավերդյանը կրկին անցնի Թիֆլիս: Նա դարձավ այստեղի բոլշևիկյան կազմակերպության աչքի ընկնող դեմքերից: Մեծ անախորժություն էր նրա գոյությունը մենշևիկների և, մանավանդ, մենշևիկյան կառավարության միլիցիայի պետի համար, որին իբրև չափ ու սահմանը վաղուց անցած գողության ու կաշառակերության պարագլխի, իր հրապարակային մերկացումներով Ալավերդյանն օր ու արև չէր տալիս:

Միլիցիայի պետի ջանքերով Ալավերդյանը փակվեց Մետեխի բանտում, իրեն դատելու համար հակառակորդների ձեռքը ոչ մի փաստ չտված:

Երկու ամիս Մետեխում նստելուց հետո նա իննօրյա հացադուլով ստիպեց մենշևիկներին Մետեխի դռները բացել իր առջև: Նրան ստիպեցին թողնել Վրաստանի սահմանները:

***

Երևան...

Վարչապետ Խատիսյանը լայն խորհրդակցություն է հրավիրել՝ երեք հարյուր հազարանոց գաղթականների բանակը սովահարությունից փրկելու միջոցների մասին խորհելու:

— Եվ այսպես, պարոնա՛յք,— երկրի դրությունը, երկար ու սրտաճմլիկ նկարագրելուց հետո, ավարտում է նա իր ճառը,— միակ ելքը, որ ես տեսնում եմ, հետևյալն է. կոչով դիմել ժողովրդին, խնդրելով ունեցողներին իրենց ունեցածի մի մասը նվիրաբերել տանջահար, սովահար գաղթականությանը:

— Պարոն Խատիսյան, պարոնա՛յք,— բոլորին լսելուց հետո, տեսնելով, որ ամենքը կրկնեցին վարչապետին, ոտքի է ելնում մի երիտասարդ, —երկրի պարենի մեծ մասը կուտակվել է սպեկուլյանտների, վաշխառուների, թալանչիների ձեռքում: Նրանք, օգտվելով ստեղծված ծանր կացությունից, կողոպտում են բնակչությանը, մի կտոր հացով վերցնելով նրանց ողջ ինչքը, և դուք հիմա ուզում եք դիմել նրանց խղճի՞ն... Նրանցից դուք ոչինչ չեք ստանա, պետք է բռնությամբ վերցնել նրանց կողոպտած, մոտները կուտակված պարենը, իսկ նրանց անողոք պատժել, ամեն միջոցով կանխել սպեկուլյացիան, որն այսօր չումայից ոչ պակաս դաժանաբար գործող մի համաճարակ է:

Խոսողը պարենավորման մինիստրության հըսկիչն էր, նույն ինքը՝ Ստեփան Ալավերդյանը:

— Պարոն Ալավերդյա՛ն, բռնությամբ վերցնել մարդկանցից իրենց սեփական ունեցվա՞ծքը... Ո՛չ, պարո՛ն, մենք չենք կարող խտրություն չդնել միջոցների առաջ, որովհետև չենք ուզում վարկաբեկել մեր կառավարությունը:

— Ո՞ւմ առաջ վարկաբեկել, սպեկուլյանտների և վաշխառուների՞... Սովահարները բնակչության մեծ մասն են կազմում և նրանք միայն շնորհակալ կլինեն:

— Ամբոխի կարծիքը չենք կարող մեզ առաջնորդ կարգել:

— Ժողովրդի կարծիքով և ժողովրդի շահերով պետք է առաջնորդվել:

— Դադարեցե՛ք, պարո՛ն: Դուք ամեն ամբիոն ուզում եք ձեր գաղափարները քարոզելուն ծառայեցնել:

Եվ վարչապետի առաջարկով որոշում է հանվում դիմել ժողովրդին՝ նվիրաբերումների կոչ անելով նրան:

Այդ կոչը հնչում է իբրև «ձայն բարբառո հանապատի»:

Եթե որևէ բան հաջողվում է անել, անում է ինքն Ալավերդյանը: Նա մեկնում է Իգդիր, այնտեղ անձամբ կազմակերպում պարենավորման գործը, բաց անում սննդատու կայաններ, խիստ վերահսկողություն սահմանելով դրանց վրա: Եթե դեռ ապրում է, կա այն քննիչը, որը դիմելով Ալավերդյանին խնդրեց իր կարիքների համար մի փութ ալյուր, ապա հավանաբար դեռ հիշում է Ալավերդյանի շեշտակի հայացքն իր վրա:

— Դուք չգիտե՞ք, որ այդ ալյուրը նրանց համար է, ովքեր փողոցներում թափված մեռնում են սովից... պարո՛ն քննիչ, այն հանգամանքը, որ դուք հնարավոր եք գտել ակնկալություններ ունենալ նրանց բաժնի վրա, հիմք է տալիս մտածելու, որ դուք հազիվ թե կարողանաք ծառայել ձեր կոչմանը:

Ալավերդյանը Իգդիրից անցնում է նաև մյուս գավառները և հնարավորին չափ կարգավորում գործը: Երբ նա վերադառնում է Երևան, Զանգիբասարի թալանից հետո այստեղ խրախճանքի օրեր էին:

***

Կյանքը օրեցօր, ժամ առ ժամ լարվում էր:

Ադրբեջանում տապալվել էր մուսավաթական կառավարությունը, և հաստատվել էին Սովետական կարգեր: Հայաստանի բոլշևիկյան ընդհատակյա Կոմիտեն քայլ առ քայլ նախապատրաստում էր ժողովրդին նոր, մեծ իրադարձություններին: Նա միաժամանակ աշխատում էր կապեր հաստատել տասնմեկերորդ բանակի հետ, որ նա օգնության հասնի, հենց որ իրենք ապստամբության դրոշ բարձրացնեն:

Դաշնակցական կառավարությունը հոտն առել և անհանգստացած էր: Նա սկսում է հետապնդումները, խումբ-խումբ ձերբակալում և բանտերն է լցնում բոլշևիկներին, ամեն միջոցով աշխատելով կանխել մայիսմեկյան տոնակատարությունը, որին նախապատրաստված էր ժողովուրդը: Բայց ահա մեկ էլ մայիսմեկյան տոնի նախօրյակին մամուլում հրապարակվում է կառավարության հատուկ ուղերձը, որով նա ողջունում է ժողովրդին առաջիկա մայիսմեկյան տոնի առթիվ:

Շփոթեցնում է այդ շատերին. ի՞նչ պատահեց, կառավարությունը խրախուսո՛ւմ է մայիսմեկյան տոնակատարությունը...

— Նա այդ արել է միայն մեզ շփոթեցնելու և ժողովրդին իր ազդեցության տակ պահելու նպատակով,— բացատրում է Ալավերդյանն իր ընկերներին:

Մայիսի մեկի առավոտյան Հայաստանի շատ գավառներում և Երևանում սկսվում են բազմամարդ ցույցերը:

Երևանում ցուցարարները հավաքվում են «պառլամենտի» շենքի առջև, ուր Ալավերդյանը հանդես է գալիս ժողովրդին նրա անելիքները պարզաբանող խոսքով, որից հետո նրա լեգալ գործունեությունը դառնում է այլևս անհնարին:

Մայիսմեկյան ցույցերին հաջորդում են պինված ապստամբությունները: Խատիսյանի կառավարությունն այլևս դադարում է վախենալ իրեն վարկաբեկելուց: Նա արյան մեջ է խեղդում ապըստամբությունը, նրա ղեկավարներին լցնում բանտերը և առանց դատ ու դատաստանի՝ խումբ-խումբ գնդակահարում:

Ալավերդյանն իր երկու ընկերների՝ Մուսայելյանի և Ղարիբջանյանի հետ երկու ամսի չափ փակված է պահվում Երևանի բանտում: Երբ ժամը հասնում է, և դահիճները գալիս են նրանց էս տանելու, շշուկը վայրկենապես անցնում է բանտի խցից-խուց և մեկ մարդու պես բանտը ոտքի է կանգնում:

Կալանավորներն իրենց խցերը թողած, դուրս են թափվում, պահակներից խլում բանալիները, նրանց դուրս վռնդում, բանտի դռները ներսից փակում և արգելում դահիճներին ներս մտնել: Բայց նրանց հաջողվում է միայն մեկ օրով երկարացնել դատապարտվածների կյանքը:

Հետևյալ օրը կորքն օղակում է բանտը: Բանտի պետը պահանջում է անմիջապես իրեն հանձնել Ալավերդյանին, Մուսայելյանին և Ղարիբջանյանին, սպառնալով այլապես հնձել բոլորին:

Ալավերդյանը բոլորի գլխին կախված շոշափելի վտանգը տեսնելով, ընկերներից պահանջում է բանտի բանալիները: Վերջիններս երկար դիմադրում են և պիջում այն ժամանակ միայն, երբ բանտի պետը խոստանում է հիշյալ երեք ընկերների մազին չդիպչել, երաշխավորում է նրանց կյանքի համար, ասելով, թե նրանց ուզում են միայն տեղափոխել:

Ալավերդյանն ինքն իր ձեռքով բացում է բանտի դռները և իր երկու ընկերների հետ հանձնըվում...

***

Դաշնակցական կառավարության անունից բանաստեղծ Լևոն Շանթը բանակցություններ էր վարում Սովետական Ռուսաստանի հետ, խաղաղության պայմանագիր կնքելու համար, երբ ՌՍՖՍՌ-ի Արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Չիչերինը լուր է ստանում Հայաստանում կոմունիստների մասսայական գնդակահարության մասին:

Ռուսաստանի սովետական ռեսպուբլիկայի բողոքը նրա կովկասյան ներկայացուցիչ Լեգրանի միջոցով հաղորդվում է Հայաստանի կառավարությանը: Բայց դրանից հետո էլ Հայաստանից եկող այդօրինակ լուրերը շարունակում են հետևել մեկը մյուսին: Մոսկվայում հայտնի է դառնում, որ մահապատժի է ենթարկված Ալավերդյանը, մի մարդ, որի մահը չէր կարող աննկատ մնալ:

Հայաստանում ստացվում է Չիչերինի նոր բողոքը, որով նա պահանջում է վերջ տալ բոլշևիկների հետապնդումներին և բացատրություն տալ Ալավերդյանի սպանության մասին:

«Կառավարության» պարագլուխ Օհանջանյանն այլ միջոց չի գտնում, քան պաշտպանվել ստով: Նա պատասխան հեռագրում հաղորդում է. «Իմ կառավարությանը ոչինչ հայտնի չէ Ալավերդյանի սպանության մասին»:

***

Երեք ամիս անց Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր:

Տոնական տրամադրությունը չխանգարեց հիշել և սգալ նրանց մահը, ովքեր ընկան այդ օրերի համար:

Ալավերդյանի և նրա ընկերների ածխացած ոսկորները տեղափոխվեցին Կոմունարների այգի, ամփոփվեցին շիրիմներում:

Ոչինչ այլևս չի լինում ավելացնելու այս պատմությանը, քան կրկնել Ասքանազ Մռավյանի հետևյալ տողերը՝ գրված Ալավերդյանի, Մուսայելյանի, Ղարիբջանյանի մահվան երկրորդ տարեդարձին.

«Խորհրդային Հայաստանի կառուցվածքի համար քար են տաշել, արյուն թափել անմոռանալի մեր այդ ընկերները և բանվորա-գյուղացիական Հայաստանը նրանց հիշատակը անմեռ կպահի իր սրտում»:

Ա. ՍԱՀԻՆՅԱՆ

Բոլշևիկյան դրոշի ներքո, դաշնակցության դեմ մղվող պայքարում կոմերիտմիությունը մի կորեղ ուժ էր դարձել: Լսում էր խորհրդակցությունը երիտասարդության աննկուն ղեկավարին և հավանություն տալիս «Սպարտակ» փառապանծ կազմակերպության հայրենանվեր գործունեությանը:

Խորհրդակցությունն, ականավոր բոլշևիկներ Մռավյանի, Ալավերդյանի, Կասյանի և մյուսների հետ միասին ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեի՝ (Արմենկոմի) անդամ ընտրեց նաև Ղուկաս Ղուկասյանին:

Պայքարը դաշնակցական կարգերը տապալելու համար ծավալվեց նոր ուժով: Ղուկասը, որին ուժ ու եռանդ չէին պակասում, գործունեության լայն ասպարեզ էր իջել:

— Ա՜յ թե ինչ լավ բան է երիտասարդ լինելը, հրավերները միշտ նրանց են ուղղում,— Արմենկոմում կատակով ասաց Սերգո Մարտիկյանը՝ նրան մեկնելով պատրաստված անհրաժեշտ փաստաթղթերը:

Մի քանի օր հետո, որպես Հայաստանի դելեգատ, նա մեկնեց Բաքու՝ բանվորագյուղացիական երիտասարդության միությունների կոնֆերանսին մասնակցելու:

Կոնֆերանսի մասնակիցների առջև ընթացիկ մոմենտի և երիտասարդական կազմակերպությունների խնդիրների մասին Անաստաս Միկոյանի զեկուցումը գործունեության նոր հեռանկարներ բացեց: Նրանք միաձայն որոշեցին Ռուսաստանի կոմերիտմիության մեջ ձուլել անդրկովկասյան կազմակերպությունները, մնալով որպես նրա մարտական ջոկատներից մեկը:

Մարզկոմի կազմում ընտրված Ղուկաս Ղուկասյանը տուն էր վերադառնում, Հայաստանի ողջ առաջավոր երիտասարդությանը բոլշևիկյան դրոշի շուրջ համախմբելու, նրանց գալիք մարտերի համար նախապատրաստելու անդրդվելի վճռականությամբ:

***

1920 թվականի անմոռանալի մայիս...

Հայոց բարձր լեռներից, ջուրը՝ ջրին առած, ուժգնանալով, ցած էին իջնում ձմռան կապանքներից ձերբազատված գետերը: Խորունկ ձորերից, տարերքի մոլեգնոտ վշշոցն էր բարձրանում:

Գետերի ելման ջրերի պես, ահարկու հոսանքով, բարձրացել էր ժողովրդի ցասման ալիքը: Հայաստանի ՝բոլոր կողմերում, գարնան կենսաբեր շնչի հետ տարածվել էր Սովետական իշխանության, «բոլշևիկների գալու» ուրախալի լուրը: Օդը նույնիսկ լցված էր ռևոլյուցիոն տրամադրություններով:

Մայիսմեկյան հուժկու ցույցեր եղան Երևանում, Ալեքսանդրոպոլում, Կարսում, Նոր Բայազետում ու մյուս տեղերում: Ձմռան կապանքները քանդելով, երկիրը գարուն էր տենչում և ոչ մի ուժ չէր կարող փակել նրա ճանապարհը:

Ղուկասը, որ Երևանի փառահեղ ցույցը կազմակերպողներից մեկն էր, հաստատ համոզված էր, որ այլևս անկարելի է մասսաներին ետ պահել պինված ելույթներից:

Այս հաստատ համոզումով էլ, մայիսի չորսին, հետապնդումից խույս տալով, նա վերադարձավ Կարս, ուր արդեն երկու ամիս էր, ինչ կատարում էր Արմենկոմի հատուկ հանձնարարությունը:

Կա՜րս... ակատատենչ պայքարի տրադիցիաներով հարուստ բերդաքաղաք... Թվում էր, թե ծանրանիստ թնդանոթների ահեղատես փողերի տակ, որոնք կարող էին մի քանի րոպեում ավերակ դարձնել շուրջն ամեն ինչ, չէր շեղվի կյանքն իր հունից:

Բայց ոչ մի հրանոթ չկարողացավ ետ պահել ափերից ելած հեղեղը մարդկային, որ գարնան այն առավոտ լցվեց փողոցները հինավուրց քաղաքի:

Տոն էր, այն էլ ի՜նչ տոն...

— Քաղաքի տերն ու տնօրենը մենք էինք այդ օրը, իսկ իշխանությունները բարվոք համարեցին գլուխ պահել քաղաքամերձ այգիներում,— կվարթ տրամադրությամբ պատմում էր Ալեքսանդր Նազարյանը՝ Կարսի նշանավոր բոլշևիկ-կազմակերպիչներից մեկը:

Ղուկասը մեծ բավականությամբ էր լսում նրանց պատմությունները վերջին օրերի անցուդարձի մասին, քանի որ մեկը մյուսին լրացնելով, բոլորն էլ միևնույն բանն էին հաստատում, որ շատ շուտով կբռնկվի ապստամբությունը ո՛չ միայն Կարսում, այլև ողջ Հայաստանում, քանի որ անհավատալի արագությամբ էին զարգանում դեպքերը:

Ղուկասը չէր սխալվում: Մայիսի 7-ին նա կանչվեց Ալեքսանդրոպոլ: «Վարդան կորավար» զրահագնացքում տեղի ունեցավ կարևոր մի խորհրդակցություն իր բախտորոշ վճիռով՝ բարձրացնել ապստամբության դրոշը:

— Կարսին ես օգնության կհասնեմ իմ զրահագնացքով,— Ղուկասին ճանապարհելիս խոստացավ Սարգիս Մուսայելյանը՝ «Վարդան կորավարի» հրամանատարը: Այդ խոստումը տրվեց հենց նոր ստեղծված, Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի անունից:

1920 թվականի հուզումնալից մայիս...

Ո՞ւմ է հաջողվել տեսնել կյանքում, թե ինչպես է պայթում բողբոջը ծաղկի, թե ինչպես է ձմռան արգանդից գարունը ծնվում...



Հրանոթների որոտագին համազարկերով, բացվեց գիշերվա ծոցից ծնված Սովետական առաջին օրվա լուսաբացը Կարսում...

Պետք էր տեսնել, թե ինչպիսի՜ խանդավառությամբ ու ջերմությամբ ողջունեցին նոր կյանքի առավոտը քաղաքի հպարտավոր բնակիչներն ու կայազորի զինվորները, որոնք առաջինը կանգնեցին ապստամբների թիկունքում:

Ապստամբության ընդհանուր ղեկավար Ղուկաս Ղուկասյանը՝ այդ արծվասիրտ պատանին, ինչպես մրրկահավը փոթորկի պահին, իր տարերքի մեջ էր: Նա արդեն հեռագրել էր Ալեքսանդրոպոլ, հայտնելով Կարսի իրադարձությունների մասին և պատասխանի էր սպասում անհամբեր:

Փոստը, դրամատունն ու զինանոցը դեռ առավոտյան էին գրավել և այժմ աշխատում էին նորմալ հունի մեջ դնել կյանքը քաղաքում, հրապարակելով նոր կարգադրություններ ու հրամաններ:

Չորրորդ օրն էր արդեն, ինչ Կարսի վրա փողփողում էր ապստամբության դրոշը, որի շուրջն արագորեն սև ամպեր էին կուտակվում... Մի քանի օր առաջ, Ալեքսանդրոպոլից ստացված կարգադրությունը՝ ձերբակալությունները դադարեցնելու, բանտարկվածներին ազատելու վերաբերյալ, բացասական նշանակություն ունեցավ Կարսի համար:

Ձեռքերն ազատ արձակված թշնամին ուժեր էր կուտակում ապստամբությունը խեղդելու համար: Մեկուսացված սպաները ոտքի կանգնեցին ամրոցներում և ամեն վայրկյան պատրաստ էին հրանոթների ահարկու փողերն ուղղել ապստամբների կողմը: Դրությունը ծանր էր և օրհասական, իսկ «Վարդան կորավարը», որն Ալեքսանդրոպոլում կռվի էր բռնվել դաշնակցականների հետ, այդպես էլ տեղ չհասավ...

Վերջին գիշերը «Բուչկիև» ամրոցում: Թշնամին սեղմում էր օղակն այնտեղ պատսպարված փոքրաթիվ ապստամբների դեմ, որոնց հավատարիմ էր մնացել միայն պարեկային վաշտը: Գիշերը ահավոր էր, դավադիր ու չար: Ի՞նչ էր խոստանում առավոտը...

Ռազմ-ռևկոմը, ամրոցի բոլշևիկների մասնակցությամբ շտապ նիստ գումարեց, դրությունից դուրս գալու ելք գտնելու համար:

— Կա մի ճանապարհ՝ պայքարել, կռվել ու տոկալ, մինչև օգնության կհասնեն մեզ: Իսկ երբ դուրս կգանք ամրոցից՝ պինդ կկապենք ու այլևս չենք արձակի մեր թշնամու ձեռքերը,— հպարտ, կրակոտ խոսքերով հուսադրում էր նրանց Ղուկասը:

«Բուչկիևը» սակայն չէր կարող դիմանալ «Տափլով»-ի թնդանոթների ահարկու կրակին: Ումի՞ց օգնություն սպասել, երբ ընդհատված է կապը Սարիղամիշի, Ալեքսանդրոպոլի ու Երևանի հետ... Չգիտես ինչ է կատարվում աշխարհում:

— Պետք է, քանի դեռ չի վերջացել գիշերը, դուրս գալ շրջապատումից, գնալ Ալեքսանդրոպոլ, վերադառնալ օգնական ուժերով և ավարտել սկսած գործը,— մթնում հնչեց մեկի վստահությունն ու հավատ ներշնչող ձայնը:

Մահվան ու խավարի թևերի տակով, դեպի լեռները դուրս եկան քսանութ ապստամբները՝ Կարսի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի անդամներն ու նրանց զինակիցները: Հրաժեշտի պահին, նրանցից մեկի՝ Խրիստովսկու կինը լաց եղավ հանկարծ.

— Տար ինձ էլ քեզ հետ, թող միասին լինենք:

— Այ քեզ հիմարիկ,— մռայլ քնքշությամբ հանգստացրեց նրան ամուսինը,— շուտով մենք վերադառնալու ենք, չէ՞ որ մի անգամ արդեն Սովետական իշխանություն ենք հաստատել...

— Անպայման շուտով,— իր հերթին հանգըստացրեց Ղուկասը, որն իր ամբողջ ջահելությունն ու կյանքը նվիրաբերեց ռևոլյուցիայի մեծ գործին:

Ապատաշունչ մայիս...

Հազիվ յոթանասուն կիլոմետր է բաժանում Կարսն Ալեքսանդրոպոլից, բայց այդ ճանապարհը դարձավ խիզախների անմահության ուղի: Վերջին տասնութ կիլոմետրի վրա, Արգինայի ձորում, ուր ափերից ելած Ախուրյանն էր շառաչում, մինչև վերջին շունչը կռվելով դաշնակմաուզերիստների դեմ, հերոսաբար ընկան Ղուկաս Ղուկասյանն ու իր ընկերները: Նրանք ընկան ցայգալույսի ցոլքը բիբերում, Հայրենիքն ազատագրող կարմիր կորքերի ոտնաձայներն ականջներին, բերկրալից գարնան և կոկոն կյանքի, դեռ քնքուշ խոսքի կարոտ սիրո մրմունջը շուրթերին... Քամվեց նրանց արյունը հարազատ հողի մեջ, լուսաթև ծաղիկների քնքուշ բաժակներում, որպեսզի այլևս ոչ մի գարուն արյունոտ ծաղիկներ չբացի: Ընկան նրանք այն պահին, երբ մեր Հայրենիքի երկնակամարում վառ լուսաբացն էր շառագունում:

Քսանմեկ գարուն ապրեց նա աշխարհում, լենինյան գաղափարներն իր երազած աստղերի պես հոգու մեջ վառած: Կուրծքը մրրիկներին դեմ տված, նա առաջ մղվեց աստղերի լույսով ընդդեմ խավարի և անմահացավ գրանիտե պատվանդանին՝ հոկտեմբերի հրդեհն աչքերում, մի ձեռքում դրոշ, մյուսում հրացան, հայացքը՝ երջանիկ, պայծառ գալիքին:

ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

# ՎԵՐՋԻՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ



Վերջին ճանապարհն էր դա, նրանց կյանքի վերջին ճանապարհը: Եվ այս մաուզերիստները, որ քայլում էին իրենց հետ, ինչ-որ տեղ, այս ճանապարհի վրա պիտի սպանեին նրանց:

Կես-գիշեր էր, երբ դուրս հանեցին բանտից, 1920 թվականի օգոստոսյան ամպամած գիշեր: Ճանապարհը դեպի Քանաքեռ էր ելնում: Հետևում Երևանն էր, կավաշեն, ավերված մի գավառային քաղաք, հետևում սով էր, խեղճություն, դանդաղորեն մահվան դատապարտված մի ժողովուրդ և ինչպես ծաղր «անկախ, ազատ Հայաստանն» իր նախարարներով, պառլամենտով, խմբապետներով և պատերի տակ սովամահ լինող գաղթականներով: Իսկ «ծովից-ծով» Հայաստանի սահմանների վրա ծանրացել էր թուրքական յաթաղանը, որ մաս առ մաս, օր-օրի վրա գրավում էր հայկական հողերը, և պատրաստվում էր «ծովից-ծով» Հայաստանի վերջին լիճը՝ Սևանն էլ գրավել:

Եվ գնում էին նրանք լուռ, գլուխները հպարտ վեր պահած, գնում էին իրենց վերջին ճանապարհը, որով ամիսներ հետո պիտի գային նրանք՝ տասնմեկերորդ բանակի զինվորները, որոնց սպասում էին: Պիտի գային ու փրկեին Հայաստանը սովից, մահից, աղքատությունից, պիտի գային ու ցրեին խավարը, քշեին գազազած խմբապետներին, պիտի գային...

Բագրատ Ղարիբջանյանը, Ստեփան Ալավերդյանը և նա քայլում էին կողք-կողքի, քայլում էին լուռ և մտախոհ:

Ու նրան թվում էր թե նորից երեխա է. նորից իրենց հարազատ գյուղում, Զայքենդում է և տան շեմին նստած մայրը գուլպա է գործում իր համար:

Իր ողջ կյանքը, որ նա այս 38 տարիների մեջ էր ամփոփել, նորից վերապրեց, վերապրեց բոլոր մանրամասներով, մինչև հրացանի կոթով կփշրեին գլուխը, վերապրեց, մինչև քարերով գազանաբար կխոշտանգեին մարմինը, վերապրեց մինչև մահը վրա կհասներ հենց այս ճանապարհին:

Գյուղական երկդասյա դպրոցում շատ տարիներ առաջ մի փոքրիկ տղա էր սովորում, մի տղա, որին նույնպես Սարգիս էին կանչում և որի ազգանունը նույնպես Մուսայելյան էր:

Նա այժմ ինքն իրեն մտաբերում է ինչպես մեկ ուրիշի, որին վաղուց արդեն կորցրել էր այս վերջին ճանապարհի վրա:

Նրան տանում էին գնդակահարելու և այն, ինչ իրենն էր, այժմ իրենը չէր, այլ մնալու էր սերունդներին, ապրելու էր նրանց հետ իր մահից հետո: Ապրելու էր այն երկդասյա դպրոց հաճախող փոքրիկ տղան, իր երազանքներով, իր հույսերով, հետո ապրելու էր այն պատանին, որ մի օր Գորի մեկնեց սովորելու, և սովորեց Գորի քաղաքի ուսուցչական սեմինարիայում. ապրելու էին բոլորը-բոլորը, անգամ իր այս վերջին գիշերվա պատմությունն էլ ապրելու էր, և, որովհետև նա արդեն իր մասին մտածում էր ինչպես մեկ ուրիշի մասին, որն էլ չկար, մահը դարձել էր հեռո՜ւ հեռավոր մի բան, կողքից քայլող մաուզերիստի սապոգի ճռռոց, օգոստոսյան անձրևի սառնություն:

Բարակ անձրև էր մաղում, տխո՜ւր, բարակ անձրև: Եվ նա հիշում էր իրեն, հիշում էր Նուխի գավառի Սաբաթլու գյուղը, կավաշեն փոքրիկ տներով, ուր ուսուցիչ էր եղել, հիշում էր հոգսերի տակ կռացած գյուղացիներին, որ գալիս



էին իր մոտ խորհուրդներ հարցնելու, գալիս էին պատմելու, թե ինչպես են կեղեքում վաշխառուները: Նրանք նույնպես երազում էին, որ իրենց որդիները մի օր դպրոց կհաճախեն, երազում, հավատում էին լավ օրերին:

Սաբաթլու գյուղում ոչ գրադարան կար, ոչ դեղատուն և ոչ էլ բժշկական օգնություն էին ցույց տալիս հիվանդներին: Միայն մի փոքրիկ կիսաքանդ գյուղական դպրոց կար, ուր աշխատում էր նա, երիտասարդ ուսուցիչ Սարգիս Մուսայելյանը:

Պետք էր փրկել գյուղը, պետք էր փրկել այնքանով, որքանով ինքը կարող էր: Եվ Սարգիսը թերթեր ու գրքեր դուրս գրեց, գյուղում գրադարան հիմնեց, հետո իր միջոցներով դեղատուն բացեց, որպեսզի գյուղացիների համար բժշկական օգնություն լինի: Նա օգնեց գյուղացիներին, որ նրանք հասկանան, թե կյանքը այսպես չի կարող շարունակվել, որ ապագան նրանց՝ գյուղացիների ձեռքին է, որ եթե նրանք ելնեն ցարիզմի դեմ, ամեն ինչ կփոխվի, երեխաները դպրոց կգնան, բժշկական օգնություն կլինի, հիվանդանոցներ ու դեղատներ կկառուցվեն:

Երեկոները երիտասարդ ուսուցչի մոտ հավաքվում էին գյուղի ջահելները, ու Սարգիսը բացատրում էր նրանց, կրուցում հետները, օգնում խորհուրդներով, ռևոլյուցիոն գրականություն էր տալիս նրանց: Հենց այդտեղ՝ Սաբաթլուում Սարգիսը հիմնեց առաջին ռևոլյուցիոն խմբակը:

Խփակոթի հարվածը սթափեցրել էր Մուսայելյանին: Նա կայրույթով ետ նայեց: Նրա կողքից քայլում էր խմբապետը, իր կարճափող անգլիական հրացանը պատրաստ պահած: Ու նրան հանկարծ այս բոլորը մի անիմաստ բան թվաց, մի ծիծաղելի բան: Տանում էին գնդակահարելու, այո, տանում էին գնդակահարելու: Եվ սրանք, այս գազազած խմբապետներն ու մաուզերիստները չգիտեին, որ նա, Մուսայելյանը վաղուց արդեն ոչ թե իրենց հետ է քայլում, այլ այնտեղ է, Սաբաթլուի գյուղացիների հետ, այնտեղ՝ լեռնածավալ Զանգեզուրում, Գորիսի նորմալ երկդասյա դպրոցի երեխաների հետ, ուր դասավանդել էր տարիներ առաջ, այնտեղ՝ առաջին համաշխարհային պատերազմի արևմտյան ֆրոնտի խրամատներում, մազակալած, հոգնած զինվորների կողքին, քանիններորդ հրաձգային սիբիրյան գնդի տղաների հետ: Ու թվում էր Մուսայելյանին, որ նորից խոսում է՝ հենված խրամատի խոնավ պատին, խոսում է պատերազմի դեմ, և մահկրկա ծխող զինվորները լսում են նրան, հարցեր են տալիս: Ու բացատրում է նա պատերազմից հոգնած, բռնապետությունից հոգնած զինվորներին, որ նրանք ոչ թե հայրենիքն են պաշտպանում թշնամուց, այլ կռվում են համաշխարհային իմպերիալիզմի շահերի համար:

Այդտեղ, հենց այդ խրամատներում էլ զինվորները Մուսայելյանին իրենց գնդի ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ ընտրեցին: Եվ նա երրորդ սիբիրյան բանակային զինվորական կորպուսի համագումարի դելեգատ դարձավ:

Այդ բոլորը տարիներ առաջ էր. հեռո՜ւ-հեռվում, 1917 թվականին, իսկ հիմա 20 թվականն էր և խմբապետներով շրջապատված իր ընկերների հետ նրան տանում էին Քանաքեռի ճանապարհով ու այստեղ, ինչ-որ տեղ, պիտի սպանեին նրանց...

Եվ քայլում էր նա, գլուխը հպարտ բռնած, քայլում էր մահին ընդառաջ ու ռևոլյուցիոն օրերի հուշերը ապստամբ կրահագնացքների նման դղրդով անցնում էին ժամանակի երկաթյա ուղիների վրայով: Անցնում, գնում էին դեպի չփակվող հորիզոնները, հրաժեշտի իրենց վերջին կանչերը փռելով գիշերի մեջ:

Ո՛չ, այդ ապստամբ կրահագնացքը չէր, որ հրաժեշտ էր տալիս իր հրամանատարին, դա Երևանի կայարանում կանգնած ինչ-որ շոգեքարշ էր, որը շփոթված ետ ու առաջ էր գնում կայարանի գծերի մեջ:

Մուսայելյանն ինքն իրեն ժպտաց: Նրա հետևից քայլող մաուզերիստը պարմացած նայեց մահապարտին, նայեց ու չհասկացավ, թե ինչպես մարդը կարող է մահն այդպես հերոսաբար ընդունել, չհասկացավ, չտեսավ այն լուսաբացները, որոնք փռվում էին մահապարտների հայացքների առջև, այս անձրևոտ, օգոստոսյան գիշերի միջից:

Կայարանից նորից լսվեց շփոթված շոգեքարշի աղիողորմ կանչը: Մուսայելյանը ետ նայեց. նրան մի պահ թվաց, թե երբեք էլ կալանավորված չէ, այլ գտնվում է «Վարդան զորավար» կրահագնացքի վրա, Ալեքսանդրոպոլի ապստամբ կայարանում:

1920 թվականի մայիս ամիսն էր: Երկրում սկսվել էին ռևոլյուցիոն շարժումները: Ադրբեջանում արդեն հաղթանակել էր ռևոլյուցիան: Ալեքսանդրոպոլում բանվորները ցույց էին կազմակերպել: Զրահագնացքը Ղամարլուի կայարանից գիշերը դուրս եկավ դեպի Ալեքսանդրոպոլ: Այնտեղ սպասում էին նրանց:

Դաշնակցական կառավարությունը տագնապի մեջ էր: Կապիտան Մուսայելյանը, որին նրանք չէին ճանաչում, բանից պարզվում էր բոլշևիկ է: «Վարդան զորավար» կրահագնացքի զինվորները միացել էին իրենց կապիտանին և պահանջում էին, որ Հայաստանը անհապաղ միանա Սովետական Ռուսաստանի հետ. նրանք ասում էին, որ

# ՏՈՀՄԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Մարքսը հանճարեղորեն նկատել է, որ հերոսների մահը նման է արևի մայրամուտին և ոչ թե այն գորտի մահվան, որը տրաքում է ուռչելուց: Մարքսը և էնգելսը մարդկության ամբողջ պատմությունը դիտելով որպես հասարակական-տնտեսական ֆորմացիաների պատմություն, դրանով իսկ հիմք դրեցին ողջ անցյալ պատմության գիտական ուսումնասիրությանը: Վերջնականապես պարզվեց, որ մարդկության պատմությունը միապաղաղ, ամբողջական քանակական պրոցես չի եղել, այլ ունեցել է իր առանձնահատուկ աստիճանները՝ ֆորմացիաները, որոնցից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում է ներքին օբյեկտիվ օրինաչափությամբ օժտված սոցիալական մի օրգանիզմ: Այդ ֆորմացիաներից յուրաքանչյուրն ունեցել է սոցիալ-տնտեսական զարգացման իր առանձնահատուկ օրենքը, մի օրենք, որ լինելով ընդհանուր օրինաչափության սպեցիֆիկ կոնկրետությունը, տվյալ ֆորմացիայի հոգևոր կուլտուրայի զարգացման հիմք է ծառայել:*

*Ուստի անհրաժեշտ է պատմական յուրաքանչյուր դարաշրջանի կուլտուրան ուսումնասիրելիս ամենից առաջ նկատի ունենալ, թե հասարակական տնտեսական ինչ ֆորմացիայի ծնունդ է այն, վերլուծել այդ ֆորմացիայի էությունը և նշել այն դասակարգը, որը կանգնած է այդ ֆորմացիայի առաջատար շարժման գլուխ: Տարբեր ֆորմացիաներում ստեղծված կուլտուրաների առանձնահատկությունները, անշուշտ, միստիկ ծագում չունեն, դրանք հնարավոր է բացատրել հասարակական ֆորմացիաների առանձնահատկությունները քննության առնելով:*

*Խոր գիտական իմացություն չի կարող լինել այնտեղ, որտեղ պատմական բոլոր պերիոդների կուլտուրան ուսումնասիրելիս ելնում են միայն մեկ ֆորմացիայի հասարակական օրինաչափություններից: Ինչպիսի՜ մոլորությունների մեջ կընկնենք, եթե բուն ստրկատիրական հասարակարգի դրականությունն ու արվեստը ուսումնասիրենք տոհմական հասարակության զարգացման գործոններից ելնելով, կամ թե չէ տոհմական հասարակության մեջ ստեղծված կուլտուրան ուսումնասիրենք ստրկատիրական հասարակարգի դասակարգային անտագոնիզմի տեսանկյունից:*

*Հունական գրականության այն արժեքները, որոնք առաջացել են տոհմական հասարակության մեջ, պետք է քննվեն տոհմական հասարակության պատմական օրինաչափությունների հիման վրա:* Անտիկ հասարակություն *ասելով Մարքսն ու էնգելսը նկատի են ունեցել* ստրկատիրական հասարակություն *և ոչ թե ընդհանրապես ամենահնագույն հասարակություն: Այս մեզ հիմք է տալիս հունական կուլտուրայի որոշ արժեքներ, որոնք մինչև այժմ, հասարակական-տնտեսական ֆորմացիայի սպեցիֆիկայի անտեսման պատճառով քննվել են անտիկ հասարակության կամ ստրկատիրական հասարակության օրինաչափությունների շրջանակներում, տեղափոխել իրենց իսկական միջավայրը, այն է՝ տոհմական հասարակության մեջ: Բուրժուական գիտությունը, իհարկե, չկարողացավ այս գործը կատարել, քանի որ այն չկարողացավ հասկանալ ո՛չ տոհմական հասարակության և ո՛չ էլ ստրկատիրական հասարակության առանձնահատկությունները: Ստրկատիրական հասարակությունից առաջ, շատ հազարամյակների ընթացքում գոյություն է ունեցել մի հասարակություն, որտեղ առաջացել, իր ժամանակաշրջանի սոցիալական հարաբերությունների սահմաններում բարձր զարգացման հասել և ապա կործանվել է մի հարուստ կուլտուրա՝ տոհմական հասարակության կուլտուրան: Մարքսը և էնգելսը այդ բանի գիտակցությանը հասան դեռևս մինչև համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այնպիսի հայտնագործությունը, ինչպիսին է Կրետո-Միկենյան կուլտուրայի հայտնագործությունը: Վերջին հայտնագործությունը լրիվին հաստատեց Մարքսի ու էնգելսի հայացքները տոհմական հասարակության մասին:*

*Ի՞նչ է իրենից ներկայացնում տոհմական հասարակությունը: Մինչ պատմական Հունաստանի կուլտուրան, ինչպես և պատմական ժամանակաշրջանի նախօրյակի կուլտուրան անկարելի է հասկանալ առանց տոհմական հասարակության էվոլյուցիան ըմբռնելու, որի քննությունը, ինչպես և դրանից բխող սոցիալական բնութագրությունը պետք է հենվի այն հաստատուն գիտական տվյալների վրա, որ մեզ տալիս են Մորգանը իր «Հին հասարակություն», Մարքսը իր «Կապիտալ», էնգելսը իր «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» աշխատությունների մեջ, նմանապես և Կրետո-Միկենյան կուլտուրայի մարքսիստական վերլուծությունը պլյուս դրան լեզվագիտությունը. այստեղ ամենից առաջ պետք է նկատի ունենալ էթնոգրաֆիան: Գիտությունը ժամանակին բավականին լուրջ նյութեր կուտակեց, որոնք հիմք հանդիսացան տոհմական հասարակության զարգացման ընդհանուր օրինաչափությունների մարքսիստական բնութագրության համար:*

*էնգելսը հետևելով Մորգանին, մարդկության առաջադիմության պատմությունը բաժանում է երեք մեծ դարաշրջանների՝ վայրենություն, բարբարոսություն և քաղաքակրթություն: Վայրենության վիճակն իրենից ներկայացնում է բնության պատրաստի բարիքների յուրացում: Այն միջոցները, որ մարդն էր հայթայթում այդ դարաշրջանում, դեռ հնարավորություն չէին տալիս նրան բնությունը վերամշակելու: Դրանք ավելի շատ օժանդակում էին բնության պատրաստի բարիքների յուրացմանը: Բարբարոսության շրջանն անասնապահության և երկրագործության առաջացման և բնության բարիքների մշակման ընդարձակման և մեթոդներին տիրապետելու դարաշրջանն է: Քաղաքակրթությունը՝ արդյունաբերության և գեղարվեստի դարաշրջանն է: Տոհմական հասարակությունը ամբողջապես վերցրած սկսվում է առաջին դարաշրջանից և վերջանում երրորդ դարաշրջանի սկզբում: Մարքսը գրում էր, որ հունական տոհմի միջից մեզ նայում է, և այն էլ միանգամայն ակներև կեր-*

պով, վայրենին. Էնգելսը հիշատակում էր, որ հոմերոսյան պոեմների մեջ նկարագրված կենցաղը բարբարոսության վերին աստիճանն է, որի հասարակական ձևը տոհմն է։

Այսպիսով, սկսած մարդկության պատմության անհիշելի ժամանակներից և վերջացրած քաղաքակրթության դարաշրջանի սկզբով, Հունաստանում հասարակական ձևը եղել է տոհմական։ Այն փաստը, որ տոհմական հասարակությունում մասնավոր սեփականություն, ինչպես և դասակարգեր գոյություն չեն ունեցել, վկայում է այն մասին, որ հասարակական այդ ձևը քաղաքացիական չի եղել, այլ եղել է տոհմական, ինչպես իրավացիորեն նշում է Մորգանը[1]։ Հետևապես, ինչպես այդ հասարակարգին, այնպես էլ նրա ստեղծած կուլտուրային չպետք է մոտենալ քաղաքացիական հասարակության հատուկ սկզբունքներից ելնելով։ Ինչի՞ վրա է հենված տոհմական հասարակությունը։ Ի՞նչ կարգի հարաբերություններ են տիրապետում այս հասարակարգում։ Այդ հարցի գիտական պարզաբանումը մենք գտնում ենք Էնգելսի «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» աշխատության մեջ։ «Մատերիալիստական ըմբռնման համաձայն,— գրում է Էնգելսը,— պատմության վերջնական վճռական մոմենտն անմիջական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունն է։ Իսկ սա ինքն էլ դարձյալ երկու տեսակ է լինում։ Մի կողմից՝ կենսամիջոցների, այն է՝ սննդի, զգեստի, բնակարանի, իրերի և դրանց պատրաստման համար պահանջվող գործիքների արտադրություն, մյուս կողմից՝ մարդկանց իրենց սերումը սեռի շարունակումը»[2]։

Այսպիսով, տոհմական կարգերը, համաձայն Էնգելսի, պայմանավորվում են արտադրության երկու տեսակներով՝ աշխատանքի զարգացման աստիճանով և ընտանիքի զարգացման աստիճանով։ Պարզ է, այն ժամանակներում, երբ դեռ բառիս բուն իմաստով արտադրություն չկար, կամ թե չէ այն սահմանափակվում էր միայն բնության բարիքների սպառմամբ, հասարակական կարգը բարիքների արտադրությամբ պայմանավորելու մասին խոսելն անհիմն էր։ Հետևապես, տոհմատիրական կարգն ավելի շուտ պայմանավորվել է երկրորդ գործոնով, այն է ընտանիքի ազգակցական կապերի զարգացման աստիճանով։ Ահա թե ինչի՛ անտեսումը հին պատմության, հին կուլտուրայի բնագավառում աշխատող մեր մի շարք ընկերներին մղում է վուլգար սոցիոլոգիզմի գիրկը։ Ահա թե ինչի՛ անտեսումը հնարավորություն չի տվել այդ մարդկանց տոհմական հասարակարգի կուլտուրայի առանձնահատկությունները և տոհմական հասարակարգում ձևավորվող սյուժեների վրա կառուցված հին հունական գրական գործերը հասկանալ։

Շարունակելով իր բացատրությունը, Էնգելսը գրում է. «Որքան ավելի քիչ է զարգացած աշխատանքը, որքան ավելի սահմանափակ է նրա արդյունքների քանակը, ուրեմն նաև հասարակության հարստությունը, այնքան ավելի տիրապետող ազդեցություն են ձեռք բերում հասարակարգի վրա ազգակցական կապերը»[3]։

---

[1] Льюис Г. Морган, Древнее общество, стр. 141, Ленинград, 1934.

[2] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 4, 1953 թ.։

[3] Նույն տեղը, էջ 4, 1953 թ.։



Տոհմական հասարակությունը, այսպիսով, հասարակական մի այնպիսի կազմակերպվածություն է, որի մեջ գերակշռող տիրապետություն ունեն հենց ազգակցական կապերը։ Եվ առանց այդ դարաշրջանների ազգակցական կապերի յուրահատկությունը հասկանալու, թե՛ իր՝ տոհմի առաջացումը, թե՛ նրա հիման վրա ձևավորվող ֆրատրիաների և ցեղերի գոյությունը, ինչպես նաև տոհմական հասարակարգի հոգևոր կուլտուրան կմնան անհասկանալի։

Ըստ տոհմական հասարակարգում ձևավորվող առասպելի, Էդիպ արքան զարհուրելի հանցանք է գործում՝ սպանելով իր հորը, ամուսնանալով իր մոր հետ. այդ հանցանքի համար նա պատժվում է, սակայն աստվածների կողմից նա արժանանում է փառավոր մահվան։ Ինչպե՞ս հասկանալ այդ։ Քրիստոնեության դարաշրջանում նման հանցագործի ոգին ուղիղ ճանապարհով դժոխք է տեղափոխվում։ Սակայն հեթանոս աստվածները Էդիպի հոգին չեն դատապարտում։ Մի՞թե կարելի է այդ բանը հասկանալ նկատի չառնելով, որ Էդիպի մասին եղած առասպելի մեջ հանդես են գալիս երկու տարբեր ժամանակների ընտանեկան տարբեր ձևերի զուգակցությունը։ Ազգակցական կապերը տոհմական հասարակարգի մեջ տիրապետող են այնքան ժամանակ, քանի դեռ աշխատանքի արտադրողականությունը որոշ բարձր մակարդակի չի հասել, քանի դեռ չկա մասնավոր սեփականություն և դրա հիման վրա առաջացած ներհակ դասակարգեր։ «Ազգակցական կապերի վրա հիմնված հին հասարակությունը նոր գոյացած հասարակական դասակարգերի ընդհարումների հետևանքով պայթում է, և նրա տեղը բռնում է մի նոր հասարակություն՝ կազմակերպված որպես պետություն, որի ստորին միավորումներն այլևս ոչ թե տոհմային, այլ տերիտորիալ միավորումներն են, մի հասարակություն, որի մեջ ընտանեկան հասարակարգը միանգամայն ենթարկվում է սեփականության հարաբերություններին, և որի մեջ այնուհետև ազատորեն ծավալվում են դասակարգային հակասություններն ու դասակարգային պայքարը, որոնք կազմում են ամբողջ գրի առնված պատմության բովանդակությունը մինչև մեր ժամանակները»[1]։

Ազգակցական կապերի և ընդհանրապես ընտանիքի զարգացման տիրապետությունը տոհմական հասարակարգում ավելի ցայտուն կլինի, եթե մենք ուշադրություն դարձնենք ընտանիքի էվոլյուցիայից տոհմի առաջացման և վերջինի հիման վրա ֆրատրիաների և ցեղերի ձևավորման վրա։ Պատմականորեն առաջ եկած ընտանիքի հարցը առաջին անգամ լրջորեն քննարկվեց Բախոֆենի «Մայրական իրավունք» աշխատության մեջ։ Ընտանիքի նախնական ձևերի լուրջ քննադատությունը Բախոֆենին հնարավորություն տվեց հունական գրականության մեջ մի շարք, մինչև այդ մութ հարցերը պարզաբանելու։ Այդ աշխատության մեջ Բախոֆենը գտնում է, որ մարդիկ սկզբում ապրել են անսահմանափակ սեռական հարաբերությունների պայմաններում։ Բախոֆենն այդ անսահմանափակ սեռական հարաբերությունները անվանում է հետերիզմ, որը ճիշտ չէ, քանի որ այն հանդես եկավ շատ ավելի ուշ, այն ժամանակ, երբ արդեն գոյություն ուներ անհատական ընտանիք։ Հետերիզմն ըստ էության այլ բան չէր, քան անհատական ընտանիքին զուգընթաց գոյություն ունեցող արտաամուսնական սեռական հարաբերությունները. Բախոֆենը

---

[1] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 4—5։

այնուհետև պնդում է, որ անսահմանափակ սեռական հարաբերությունների պայմաններում չի եղել հաստատուն հայրության գաղափար և դրա համար էլ երեխաների ծագումը հաշվել են միայն կանացի գծով և այս հողի վրա է միայն կանանց տրվել ակնածություն, որը զարգանալով վեր է ածվում մայրիշխանության։ Այնուհետև Բախոֆենը նշում է, որ անցումը դեպի միակնություն արդեն խախտումն է կնոջ այն վաղեմի իրավունքի, ըստ որի կինը կարող էր պատկանել ամեն մեկին։ Եվ հենց այդպիսի հայացքի տեսանկյունից Բախոֆենը տվեց Էսքիլեսի «Օրեստես» տրագեդիայի մի նոր և անկասկած ճիշտ մեկնաբանությունը։ Բախոֆենից հետո հանդես եկավ Ջ. Ֆ. Մակ-Լեննանը, որը ստեղծում է մի այնպիսի թեորիա նախնական ընտանեկան ձևերի վերաբերյալ, որի հիմքը կազմում է նրա կողմից արհեստականորեն հորինված էքզոգամ և էնդոգամ (էքզոգամիա—ամուսնություն տոհմից դուրս, էնդոգամիա—ամուսնություն տոհմի ներսում) ցեղերի հակադրությունը։ Մակ-Լեննանը նշեց ամուսնական երեք ձևեր՝ բազմակնություն, բազմայրություն և մենամուսնություն։ Մակ-Լեննանի թեորիան ամբողջապես վերցրած պատմական փաստերի լուրջ հետազոտության արդյունք չէր, այլ տրամաբանական մի հորինվածք և դրա համար էլ, երբ հետամնաց ժողովուրդների կյանքի ուսումնասիրությունները ցույց տվեցին ամուսնական այլ ուրիշ ձևեր, ապա այդ թեորիայի սնանկությունը լիովին ակնբախ դարձավ։ Ընտանիքի պատմական էվոլյուցիան, ինչպես և տոհմերի, ֆրատրիաների և ցեղերի առաջացումը փայլուն ուսումնասիրության ենթարկվեց Մորգանի կողմից նրա «Հին հասարակություն» աշխատության մեջ, որը լույս տեսավ 1877 թվականին։

Թե որքան մեծ էր Մորգանի կողմից հայտնագործված փաստերի նշանակությունը, ցույց է տալիս Էնգելսի այն միտքը, ըստ որի Մորգանը նորից է հայտնագործել Մարքսի կողմից 40 տարի առաջ հայտնագործված պատմության մատերիալիստական ըմբռնումը։ Մորգանը, միանգամայն հակառակ Մակ-Լեննանի, ցույց տվեց, որ էնդոգամիան և էքզոգամիան հակադրություններ չեն, Մակ-Լեննանը անտեսել է խմբական ամուսնության փաստը, ամուսնության այն ձևը, որի ժամանակ մի խումբ տղամարդիկ միասնաբար կանայք են ունեցել։

Խմբական ամուսնության ժամանակ ցեղը բաժանվում է մայրական գծով՝ արյունակից մի շարք խմբերի, տոհմերի, որոնց ներսում ամուսնությունը արգելված է։ Մի տոհմի տղամարդիկ իրենց կին կարող էին առնել ցեղի ներսում, բայց իրենց կին պետք է առնեին իրենց տոհմից դուրս։ Այնպես որ տոհմը ինքը էքզոգամ էր, սակայն տոհմերի միասնություն կազմող ցեղը էնդոգամ էր։ Շարադրելով Մորգանի այդ մտքերը, Էնգելսը գրում է. «Սակայն Մորգանը սրանով չբավականացավ... Մայրական իրավունքի համաձայն կազմակերպված այս տոհմի մեջ նա հայտնագործեց այն նախնական ձևը, որից զարգացել էր հետագա՝ ըստ հայրական իրավունքի կազմակերպված տոհմը, այն տոհմը, որ մենք գտնում ենք անտիկ քաղաքակիրթ ժողովուրդների մոտ»[1]։

«Մայր իրավունքի վրա հիմնված սկզբնական տոհմի այս վերստին հայտնագործումը, իբրև քաղաքակիրթ ժողովուրդների հայրիրավական տոհմի

[1] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 21։



նախաստիճան, նախնադարյան պատմության համար նույնպիսի նշանակություն ունի, ինչպես որ Դարվինի զարգացման թեորիան կենսաբանության համար և Մարքսի հավելյալ արժեքի թեորիան՝ քաղաքատնտեսության համար»[1]։ Այնուհետև Մորգանը հաստատում է Բախոֆենի այն կարծիքը, ըստ որի եղել է մի նախնական դրություն, երբ որևէ տվյալ ցեղի մեջ իշխող է եղել անսահմանափակ սեռական հարաբերությունը, որ Բախոֆենի և Մորգանի այս կարծիքը ճիշտ է, ցույց է տալիս այն հանգամանքը, որ դեռ մինչև XVII դարը գոյություն են ունեցել ժողովուրդներ, որոնց մեջ, իրոք, սեռական հարաբերությունները ոչ մի արնակցական սահման չեն ճանաչել։

Ընտանիքի զարգացման առաջին և մեծ առաջադիմական քայլն այն էր, որ բացառվեցին սեռական հարաբերությունները ծնողների և նրանց զավակների միջև, երկրորդ քայլը եղավ եղբոր և քրոջ ամուսնության բացառումը։ Ընտանիքի պատմության մեջ պատմական այդ առաջադիմական քայլերը արժեքավորելով՝ Էնգելսը գրում է. «Անկասկած այն ցեղերը, որոնց մեջ ներքին սեռական հարաբերությունները սահմանափակվում էին այս առաջադիմական նորամուծությամբ, պետք է ավելի արագ և ավելի կատարյալ կերպով զարգանային, քան այն ցեղերը, որոնց մեջ ընդհանուր կանոն և պատվիրան էր մնում քույր ու եղբայրների ամուսնությունը։ Թե ինչ վիթխարի ազդեցություն ուներ այս առաջադիմությունը, ապացուցում է տոհմերի (gens) անմիջականորեն նրանից ծագած, բայց իր սկզբնական նպատակից շատ առաջ անցած կազմակերպությունը, որ երկրագնդի եթե ոչ բոլոր բարբարոս ժողովուրդների, ապա նրանց մեծամասնության հասարակական կարգի հիմքն է և որից մենք Հունաստանում և Հռոմում անմիջականորեն անցնում ենք քաղաքակրթությանը»[2]։

Համաձայն Մորգանի թեորիայի, ամեն մի նախնական ընտանիք մի քանի սերնդից հետո պետք է բաժանվեր։ Ծնողների և զավակների, եղբայրների և քույրերի միջև սեռական կապերի բացառումը հանգեցրին այն բանին, որ քույրերի որոշ շարքեր դարձան մի ընտանեկան համայնքի կորիզ, իսկ նրանց եղբայրները՝ մի այլ ընտանեկան համայնքի կորիզ։ Հենց այստեղից էլ առաջ եկավ ընտանեկան այն ձևը, որ Մորգանը անվանեց պունալուա ընտանիք։ Այս ձևի մեջ մի խումբ հարազատ և ավելի հեռավոր եղբայրներ ընդհանուր կնություն են առնում մի խումբ կանանց, որոնց մեջ, իհարկե, չէին կարող լինել արյունակից քույրեր։ «Ըստ երևույթին տոհմ կոչված հաստատությունը (gens) ամենամեծ մասամբ առաջ է եկել անմիջականորեն պունալուա ընտանիքից»[3]։

Այս ամենը ցույց են տալիս ընտանիք հաստատության հսկայական դերը տոհմական հասարակարգի առաջացման և զարգացման պատմության մեջ. նմանապես և վկայում են այդ հասարակարգի ոչ քաղաքացիական բնույթի մասին։

Տոհմական հասարակության հասարակական սիստեմը, ինչպես արդեն ասվեց, կազմված է տոհմից, ֆրատրիայից և ցեղից։ Մենք արդեն տեսանք, որ տոհմը հանդես եկավ անմիջականորեն ընտանիքի հիման վրա, այն բխեց պունալուա ընտանիքից։ Ընտանիքի էվոլյուցիայի նշանակությունը տոհմա-

[1] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 21—22։
[2] Նույն տեղը, էջ 42։
[3] Նույն տեղը։

կան հասարակարգում է՛լ ավելի հասկանալի կլինի, եթե նկատի ունենանք, որ ֆրատրիան էլ այլ կերպ չի առաջացել, քան մի սկզբնական տոհմի սեգմենտացումից, իսկ ցեղն այլ բան չէ, քան մի քանի ֆրատրիաների միավորություն։ Ընդ որում, քանի որ տոհմական հասարակությունը կենտրոնացած հասարակություն չի եղել, ապա սոցիալական հիմնական միավորը եղել է տոհմը։ Իսկ ֆրատրիան որպես զինվորական միավորում հանդես է գալիս և Հոմերոսի մոտ։ «Իլիականի» մեջ Նեստորը դիմում է Ագամեմնոնին, խորհուրդ տալով՝ մարդկանց դասավորիր ցեղերով և ֆրատրիաներով, այնպես որ ֆրատրիան կարողանա օգնել ֆրատրիային և ցեղը ցեղին։ Հոմերոսի պոեմի այս տողերը վկայում են, որ զորքի բաժանումը ըստ ֆրատրիաների եղել է տրոյական պատերազմից շատ առաջ որպես տրադիցիա, իսկ տրոյական պատերազմի ժամանակ, այն արդեն որոշ չափով մոռացության էր տրված։

Որպես բնականորեն առաջացած ձևեր տոհմը, ֆրատրիան և ցեղը նույնպիսի բնականությամբ ծնեցին իրենց աստվածները, ընդ որում նրանցից յուրաքանչյուրը իր ֆունկցիաների և իր ծննդաբանության համաձայն։

Մորգանն իր «Հին հասարակություն» աշխատության մեջ վկայակոչում է Դե Կուլանժին, ըստ որի «ֆրատրիան ուներ իր ժողովները, դատարանները և կարող էր որոշումներ ընդունել։ Նա, ինչպես ընտանիքը, ուներ իր աստվածը, իր քուրմերը, դատարանը և իր կառավարչությունը»։ Ֆրատրիաների կրոնական ծիսակատարությունները հանդիսանում էին այն տոհմերի ծիսակատարությունների ընդարձակումը, որոնցից նա կազմված էր»[1]։ Մորգանը միանգամայն իրավացիորեն ասում է, որ «Նա ով ցանկանում է հասկանալ հույների կրոնական կյանքը, պետք է այս բանի վրա ուշադրություն դարձնի»[2]։

Առարկելով Գրոտեին, Մարքսն ասում է. «Թեև հույներն իրենց տոհմերը բխեցնում էին դիցաբանությունից, սակայն այդ տոհմերն ավելի հին են, քան հենց նրանց ստեղծած դիցաբանությունն իր աստվածներով ու կիսաստվածներով»[3]։

Նկատի ունենալով այդ ամենը, խիկույն աչքի է զարնում, թե ինչքան անհիմն ու բռնազբոսիկ է, երբ բուրժուական պատմաբաններից ոմանք տոհմական կարգը համարել են միապետական և աշխատել են տոհմական հասարակության մեջ թագավորներ տեսնել արդի իմաստով։ Տոհմական հասարակարգում բնավ էլ գոյություն չի ունեցել ժողովրդից անջատ ինչ-որ իշխանություն, լինի այդ միապետի ձևով, թե այլ օրգանի ձևով։ Վերջին ինստանցիայի իշխանությունը ինքը ժողովուրդն է։ Ժողովրդական ժողովը, որին իրավունք է ունեցել մասնակցելու տոհմի կամ ֆրատրիայի յուրաքանչյուր անդամ, լիովին միահեծան է եղել, տոհմերի ավագներից կազմված խորհուրդը և ռազմական առաջնորդը՝ բասիլևսը, նույնքան ենթակա են այդ ժողովին, որքան տոհմի հասակն առած առանձին անդամ։ «Նախաբնական դեմոկրատիան,— ասում է Էնգելսը,— դեռ լիակատար ծաղկման շրջանումն էր գտնվում և այս պետք է ելակետ ծառայի թե խորհրդի և թե բասիլևսի իշխանությունն ու դիրքը որոշելու ժամանակ»[4]։

---

1 Льюис Г. Морган, Древнее общество, стр. 139.

2 Նույն տեղը։

3 Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 119։

4 Նույն տեղը, էջ 123։



Տոհմական ավագներից կազմված խորհրդի նիստերին մասնակցում էր ժողովուրդը, թե՛ տղամարդիկ և թե կանայք, որոնք շուրջ բոլորած նստում և մասնակցում էին խորհրդում ծագած վիճաբանություններին, ազդում նրա որոշումների վրա։ Հոմերոսի պոեմների մեջ գոյություն չունի և ոչ մի մոմենտ, որից կարելի լինի եզրակացնել, թե ժողովուրդը իր ավագների կամ բասիլևսի հարկադրությամբ որևէ գործ կատարեր։ «Իլիականի» մեջ ավարը բաշխում է ոչ թե Ագամեմնոնը, այլ աքայացոց որդիները։ Այս փաստերը ժխտում են և մեկ ուրիշ բռնազբոսիկ դրույթ, այն, թե իբր բասիլևսը եղել է միապետ, թագավոր իր արդիական իմաստով։ Նման պնդումը բուրժուական պատմագրության զուհիկ գրելու ձևերից մեկն է, մի գրելաձև, որ նպատակ ունի ֆեոդալական և բուրժուական հարաբերությունները տեղափոխել և տեղադրել տոհմական հասարակարգում։

Բասիլևսի և տոհմական հասարակարգում նրա իրավունքների ու դերի մասին գոյություն ունի Կարլ Մարքսի բավականաչափ մանրազնին կարծիքը, որը վկայակոչում է Էնգելսն իր «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» աշխատության մեջ։ «Եվրոպական գիտնականները, որոնք մեծ մասամբ իշխանների բնածին լակեյներ են, բասիլևսին միապետ են դարձնում այդ բառի արդի իմաստով»[1]։ «Եթե հույների մոտ, հայրական իրավունքի տիրապետության ժամանակ, բասիլևսի պաշտոնը սովորաբար անցնում էր որդուն, կամ որդիներից մեկին, ապա այս ապացուցում է միայն, որ այստեղ որդիները իրենց հորը հաջորդելու հույսը կարող էին ունենալ ժողովրդական ընտրության միջոցով, բայց այս ամենևին ապացույց չէ, որ նրանք ժառանգելու օրինական իրավունք ունեին առանց այդպիսի ընտրության»[2]։ «Այդ պատճառով պետք է ենթադրել, որ հույների մեջ բասիլևսը կա՛մ պետք է ընտրվեր ժողովրդի կողմից, կամ թե չէ՝ հաստատվեր նրա ճանաչված օրգանների խորհրդի կամ ագորայի կողմից, ինչպես այդ տեղի ուներ հռոմեական «թագավորի» (rex) վերաբերմամբ»[3]։ Մորգանի կարծիքով էլ տղան կարող էր լինել հոր պաշտոնը ընտրության միջոցով ստացողների թվում. «Բասիլևսի պաշտոնի ժառանգական փոխարկման մասին եղած ենթադրությունը հակասում է հունական հաստատությունների բնույթին»[4]։

«Իլիականի» մեջ վեհապետ Ագամեմնոնը հանդես է գալիս ոչ որպես հույների թագավոր, այլ որպես դաշնակից զորքերի գերագույն առաջնորդ՝ պաշարված քաղաքի առջև։ Նրա այդ դրությունը ցույց է տալիս Ոդիսևսը «Իլիականի» հռչակավոր հատվածում, երբ հույների մեջ ծագում է խառնակություն։ «Լավ բան չէ բազմահրամանատարությունը, թող մեկը լինի հրամանատարը»։ «Ոդիսևսն այստեղ դասախոսություն չի կարդում կառավարական ձևի մասին,— գրում է Մարքսը,— այլ հնազանդություն է պահանջում գերագույն զորահրամանատարին՝ պատերազմի ժամանակ։ Հույները, որոնք Տրոյայի առջև միայն իբրև զորք են հանդես գալիս, իրենց բավական դեմոկրատական ձևով են պահում ագորայում։ Աքիլլեսը, երբ նա խոսում է ընծաների, այսինքն՝ ավարի բաժանման մասին, միշտ ավար բաժանող է դարձնում

---

1 Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր II, էջ 329, 1950 թ.։

2 Նույն տեղը, էջ 329։

3 Նույն տեղը, էջ 329—330։

4 Льюис Г. Морган, Древнее общество, стр. 144.

ոչ թե Ագամեմնոնին կամ որևէ մի այլ բասիլևսի, այլ «աքայեցոց որդիներին», այն է՝ ժողովրդին։ «Զևսածին» և «Զևսասուն» նման մակդիրները ոչինչ չեն ապացուցում, որովհետև յուրաքանչյուր տոհմ ծագում է որևէ աստծուց, իսկ ցեղապետի տոհմը, իհարկե, ավելի «ազնվածնունդ» աստծուց, տվյալ դեպքում՝ Զևսից։ Մինչև անգամ անձնապես անազատները, ինչպես օրինակ, խոզապահ Էվմեոսը և ուրիշներ աստվածային են (Dioi և theioi) և այս՝ «Ոդիսականի» մեջ... նկարագրված ժամանակն է»[1]։

«Կարճ ասած,— եզրափակում է Մարքսը,— basibeia բառը, որը հունական հեղինակները գործ են ածում այսպես կոչված հոմերյան թագավորական իշխանությունը նշելիս, ղեկավարների խորհրդի ու ժողովրդական ժողովի առկայությամբ նրա կողքին,— միայն զինվորական դեմոկրատիա է»[2]։ Բասիլևսը բացի զինվորական պարտականությունից ունեցել է նաև քրմական և դատավորական պարտականություն, և այլ բոլոր դեպքերում նա հանդես է գալիս որպես ցեղերի միության գերագույն ներկայացուցիչ։ Էնգելսը գտնում է, որ բասիլևս բառը ստուգաբանական տեսակետից ճիշտ կլիներ թարգմանել գերմաներեն (konig) բառով, որ ծագում է kuni բառից, նշանակում է առաջնորդ։ Հայերեն տոհմապետ բառը լիովին համապատասխանում է բասիլևս հասկացությանը։ Այս ամենից պարզ է, «որ տոհմապետ» տերմինը փոխել «թագավոր» տերմինով, ինչպես այդ կատարվել է Հոմերոսի հայերեն թարգմանություններում՝ կոպիտ սխալ է։

Բասիլևս տերմինի նման նշանակության մասին վկայում են և Թուկիդիդեսի ու Արիստոտելի բացատրությունները։ Մարքսի և Էնգելսի այդ տեսակետն արդարացրեց և Մորգանի ուսումնասիրությունները։

Մորգանը առարկելով Գրոտին, ըստ որի հունական պրիմիտիվ կարգը եղել է զուտ միապետական, գրում է. «Հույների կառավարման նախնական եղանակը եղել է զուտ դեմոկրատական, հենվելով տոհմերի, ֆրատրիաների և ցեղերի վրա, որոնք կազմավորվել են որպես ինքնաղեկ միավորներ, հավասարապես և ազատության ու եղբայրության պրինցիպների վրա։ Այդ բանը ապացուցվում է այն ամենով, ինչ մենք գիտենք տոհմական կազմակերպության մասին...»[2]։

«Բասիլևսը կարելի է սահմանել, որպես ռազմական դեմոկրատիա, քանի որ ժողովուրդն ազատ էր, և այդ կառավարման ոգին, որն ամենաէականն է— դեմոկրատական էր»[3]։ Անշուշտ բասիլևսի նման բնութագրությունը չպետք է քարացած հասկանալ։ Սխալ կլիներ կարծել, թե հույների պատմության բոլոր շրջաններում բասիլևսը իր դրությամբ միևնույնն է եղել, կամ թե չէ բոլոր ժողովուրդների մոտ բասիլևսը միևնույն ֆունկցիան և միևնույն տեղն է ունեցել։ Արիստոտելի վկայությունն ասում է այն մասին, որ բասիլևսի դերը հնագույն ժողովուրդների մոտ տարբեր է եղել, նմանապես և հույների մոտ, նա ունեցել է իր էվոլյուցիան։ Իր «Պոլիտիկա»-ի մեջ Արիստոտելը գտնում է, որ գոյություն ունի չորս տեսակ բասիլևս, առաջինը պատկանում է հերոսական ժամանակներին, այդ մի իշխանություն էր ազատ ժողովուրդների նկատմամբ,

[1] Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր II, էջ 330։
[2] Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր II, էջ 331։
[3] Նույն տեղը, էջ 114։



սակայն մի քանի սահմանափակություններով։ Բասիլևսը նրանց զորավարն էր, դատավորը և գերագույն քուրմը։ Երկրորդ՝ բարբարոսների բասիլևսն է, որ իրենից ներկայացնում էր ժառանգված իշխանություն, կարգված օրենքներով, երրորդը—այսպես կոչված Էսիումնետես՝ ընտրական տիրանը։ Չորրորդը— լակեդեմոնյան բասիլևսը, որ այլ բան չէ, քան ժառանգված ցմահ զորավարի պաշտոն[1]։ Հասկանալի է, որ Արիստոտելի նշած այս ձևերից առաջինը եղել է բուն տոհմական հասարակության ժամանակ և իր իմաստով չի համապատասխանում ժամանակակից միապետությանը։

Հերոսական դարաշրջանի հունական կյանքում գոյություն չուներ և չէր կարող ունենալ ոչ թագավոր և ոչ էլ մի այլ վերևից հարկադրող օրգան։ Այստեղ առկա են տոհմական կարգեր, որոնք փոխանակության ծավալման պատճառով սկսում են քայքայվել, որի ընթացքում մայրական իրավունքը փոխարինվում էր հայկական իրավունքով։ Այդ հանգամանքը նշանակալիորեն նպաստեց տոհմատիրության քայքայմանը։ Այս վերջինի համաձայն զավակներն էին ժառանգում հույքը։ Այս հանգամանքը հարստություն կուտակեց ընտանիքում և ընտանիքը սկսեց տոհմի հանդեպ աստիճանաբար դառնալ մի հակադիր ուժ։ Այս ճանապարհով սկսեց զարգանալ գույքային անհավասարությունը, որը հետագայում ճանապարհ բաց արեց ժառանգական ազնվականության և թագավորական իշխանության առաջ գալու համար։

Այսպես, ինչպես տեսնում ենք, ի տարբերություն քաղաքացիական հասարակարգի, տոհմական կարգի սոցիալական միավորումը տոհմն է, որի զարգացումը և ծավալումը հենված է ազգակցական կապերի վրա։ Հասարակության մեջ նման կապեր, ինչպես նշել է Մարքսը, առաջին սոցիալական հարաբերություններն են եղել։ Տոհմական կարգի էվոլյուցիան և այդ էվոլյուցիայի մատերիալիստական բացատրությունը մեզ տալիս է դեպի իր հակադրությունը զարգացող հասարակության մի հիանալի օրինակ։ Մասնավոր սեփականության և դասակարգային հարաբերություններին օտար, սեռական կապերի մի որոշ ձևից (պունալուա ընտանիքից) գոյացած, տոհմական կարգն իր զարգացման բարձր աստիճանին հասնելով մայրիշխանության մեջ, փոխարկվում է հայրիշխանության և վերջինի միջոցով անցնում է մի հասարակության, որ հենված է մասնավոր սեփականության և դասակարգերի գոյության վրա։

Եթե պատմության մատերիալիստական ըմբռնման համաձայն հասարակական զարգացման որոշիչ մոմենտը անմիջական կյանքի արտադրություն և վերարտադրություն է, կամ այլ կերպ ասած արտադրական հարաբերությունների արտադրություն և վերարտադրություն, ապա անհրաժեշտ է նշել երկու տեսակի արտադրություն՝ ոչ միայն բարիքների արտադրություն, ոչ միայն բարիքների արտադրության պրոցեսում ստեղծված մարդկանց արտադրական հարաբերություններ, այլև մարդու՝ իրեն արտադրությունը, ազգակցական հարաբերությունները։ Քանի որ պատմական այն ժամանակներում, երբ գոյություն չուներ աշխատանքի արդյունքների փոխանակություն, չէին կարող լինել և հասարակության զարգացման վրա որոշիչ ազդեցություն ունենալ արտադրական հարաբերությունների այն ձևերը, որոնք առաջնային նշանակություն են ստա-

[1] Политика Аристотеля, стр. 1[illegible]9, М. 1911.
[2] Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 126։

նում դասակարգային հասարակություններում։ Բարիքների արտադրության պրոցեսում գոյացած արտադրական հարաբերությունները հանդես են գալիս և սկզբնապատճառի դեր են խաղում միայն իրավունքով ամրակայված փոխանակային հարաբերությունների պայմաններում։ Մինչդեռ «կոլեկտիվ սկզբունքներով կազմակերպված, արտադրական միջոցների հանրային սեփականության վրա հիմնված հասարակության մեջ արտադրողները չեն փոխանակում իրենց պրոդուկտները»[1]։

Այսպիսով, մինչև դասակարգային հասարակության մեջ որոշիչ դեր, ինչպես նշում է Էնգելսը, խաղացել են հայթայթման ազգակցական կապերը, կամ ընտանիքների այն ձևերը, որոնց վրա խարսխվում է, որոնց շնորհիվ զարգանում է ողջ տոհմական կարգը։

Տոհմական հասարակության մեջ, հենց սկզբից վճռական տեղ հատկացնել բարիքների արտադրությամբ կամ այլ կերպ ասած, բարիքների ստեղծման պրոցեսում ստեղծված արտադրական հարաբերություններին, նշանակում է դասակարգային հասարակության հատուկ օրինաչափությունները իրենց սոցիալ-քաղաքական ատրիբուտներով տեղադրել տոհմական հասարակության մեջ, ինչպես այդ բազմիցս փորձել են կատարել բուրժուական կարգի հավերժություն քարոզող սոցիոլոգները։ Ահա թե ինչու մարքսիզմի կլասիկները հատուկ ուշադրություն են դարձրել տոհմական հասարակարգի սոցիալական բնույթի քննության վրա, աշխատելով ընդգծել ազգակցական կապերի վճռական նշանակությունը այդ հասարակարգի զարգացման գործում, աշխատելով հենց դրանով ցույց տալ, որ տոհմական կարգը ոչ թե քաղաքացիական է, այլ տոհմական, որ «ընտանիքը սկզբից միակ սոցիալական հարաբերությունն է եղել»[2]։

Այս առնչությամբ ավելորդ չենք համարում հիշատակել այն հանգամանքը, որ Մարքսի և Էնգելսի Ընտիր երկերի երկրորդ հատորի 210-րդ էջում տողատակի ծանոթագրությունը ճիշտ չէ։ Այդ ծանոթագրության մեջ ասված է. «Էնգելսն այստեղ անճշտություն է թույլ տալիս, ցեղի շարունակությունը և կյանքի միջոցների արտադրությունը կողք-կողքի դնելով որպես պատճառներ, որոնք բնորոշում են հասարակության և հասարակական կարգերի զարգացումը»[3]։

Նախ, Էնգելսը բնավ բոլոր հասարակարգերում բարիքների արտադրությանը և իրենց՝ մարդկանց արտադրությանը հավասարապես վճռական նշանակություն չի տալիս։ Էնգելսը բացահայտ պարզությամբ ասում է, որ ազգակցական կապերը վճռական նշանակություն են ունեցել միայն տոհմական հասարակարգում և ոչ ընդհանրապես։ Քանի որ Էնգելսի գրույթը վերաբերում է միայն տոհմական հասարակությանը, ապա վերոհիշյալ ծանոթագրությունն անհիմն է։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

1 Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր II, էջ 17։
2 К. Маркс, Ф. Энгельс, Соч. IV, стр. 19, 1933.
3 Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր II, էջ 210, 1950 թ։

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ԿԱ՞ ԱՐԴՅՈՔ ԳՈՅՈՒԹՅԱՆ ԿՌԻՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

(Պատասխանում ենք Դղմաշեն գյուղի դպրոցի ուսուցիչ Գ. Խ. Ստեփանյանի հարցին)

Գոյության կռիվ տերմինն առաջին անգամ օգտագործել է անգլիացի խոշոր բնագետ Չարլզ Դարվինը, 19-րդ դարի կեսերին։ Գոյության կռիվը իրենից ներկայացնում է օրգանական աշխարհի յուրահատուկ հակասությունների արտահայտությունն։ Այն հանդիսանում է օրգանական աշխարհի (կենդանական և բուսական) պատմական զարգացման օբյեկտիվ օրենք, շարժիչ ուժ։ Գոյության կռվի օրինակ է հանդիսանում պայքարը գիշատիչ և ոչ գիշատիչ կենդանիների, կուլտուրական բույսերի և մոլախոտերի միջև և այլն։

Գոյության կռիվը անօրգանական աշխարհին չի վերաբերում։ Այն յուրահատուկ է միմիայն կենդանի բնությանը։ Գոյության կռիվը հանդիսանում է ինչպես կենդանի օրգանիզմների, այնպես էլ այդ օրգանիզմների ու նրանց արտաքին միջավայրի միջև եղած որոշակի հակասությունների ու փոխհարաբերությունների արդյունք։ Այն հակադրությունների պայքարի և միասնության դիալեկտիկական ընդհանուր օրենքի կոնկրետ, սպեցիֆիկ արտահայտությունն է օրգանական աշխարհում։

Գոյության կռվի պատճառները, նրա բնույթն ու գործողության սահմանները մեկնաբանելիս Դարվինը սոցիոլոգիայի բնագավառից սխալ կերպով օրգանական աշխարհ փոխադրեց մի շարք ռեակցիոն տեսակետներ։ Նա օգտագործեց Թոմաս Հոբսի ուսմունքը («բոլորի կռիվը բոլորի դեմ») և ազգաբնակչության աճի վերաբերյալ մալթուսյան կեղծ թեորիան։ Դարվինի կողմից այդ սխալը կատարելուց հետո, նշում էր Ֆ. Էնգելսը, «շատ հեշտ է այնուհետև այդ ուսմունքը բնության պատմությունից կրկին փոխադրել հասարակության պատմության բնագավառը»։

Ֆ. Էնգելսի այդ կանխատեսումը կատարվեց։ XIX դարի վերջում բուրժուական սոցիոլոգիայի մեջ առաջ եկավ և արագ կերպով տարածվեց մի ուղղություն, որը կոչվեց սոցիալ-դարվինիզմ (Լանգե, Ամմոն, Ջեննինգս, Կոլլի և ուրիշներ)։ Սոցիալ-դարվինիզմը անտեսում է բնության և հասարակության երևույթների ու զարգացման օրենքների որակական տարբերությունը։ Այն հասարակության զարգացումն ամբողջությամբ բացատրում է բնության մեջ գործող բիոլոգիական օրենքներով և, հատկապես, գոյության կռվով։ Բնության օրենքները մեխանիկորեն տարածելով հասարակական կյանքի բնագավառը, այն գտնում է, որ գոյության կռիվը իրենից ներկայացնում է բնության և հասարակության զարգացման ընդհանուր և մշտական օրենք։ Ըստ սոցիալ-դարվինիզմի գոյության կռիվն է, որ ապահովում է հասարակության մտավոր և ֆիզիկական նորմալ առաջընթացը։ Գոյության կռվի հետևանքով է, որ թույլերը, անկայունները, չհարմարվողները, անընդունակները ոչնչանում են՝ իրենց տեղը զիջելով ուժեղներին, կենսունակներին, ընտրյալներին, բիոլոգիապես լիարժեքներին։ Սոցիալ-դարվինիզմի նպատակն է գոյության կռվի միջոցով արդարացնել կապիտալիզմը։

Հասարակական կյանքը, համեմատած օրգանական աշխարհի հետ, իրենից ներկայացնում է որակական ավելի բարձր աստիճան։ Իր երևույթներով նա ավելի հայտուտ է ու ավելի բարդ։ «Կենդանին լավագույն դեպքում իր գոյության միջոցները հավաքում է, իսկ մարդը արտադրում է» (Էնգելս)։ Մարդը ստեղծում է գոյության այնպիսի միջոցներ, որ բնությունը, արտաքին աշխարհագրական միջավայրն առանց նրան չէին կարող առաջացնել։ Հասարակական կյանքում, արտադրության շնորհիվ մարդկանց գոյության պայմաններն ու միջոցներն իրենց բնույթով ու քանակով որակապես տարբերվում են կենդանիների ու բույսերի

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹ-ՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին», *Հայպետհրատ, 705 էջ, գինը 10 ռ. 60 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Սոցիալիզմը և պատերազմը», *Հայպետհրատ, 60 էջ, գինը 60 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Սոցիալիզմը և կրոնը», *Հայպետհրատ, 9 էջ, գինը 10 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը», *Հայպետհրատ, 23 էջ, գինը 25 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Պրոֆմիությունների դերի և խնդիրների մասին նոր տնտեսական քաղաքականության պայմաններում», *Հայպետհրատ, 18 էջ. գինը 15 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Մեծ նախաձեռնություն», *Հայպետհրատ, 34 էջ, գինը 40 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին», *Հայպետհրատ, 7 էջ, գինը 10 կոպ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Ապրել հաշտ և խաղաղ», *Հայպետհրատ, 489 էջ, գինը 6 ռ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Դեպի հաղթանակ կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ», *Հայպետհրատ, 789 էջ, գինը 9 ռ. 50 կոպ.։*

Ա. ԳՐԵՆԲԵՐԳ—«Ուլյանովների ընտանիքում», *Հայպետհրատ, 64 էջ, գինը 3 ռ. 45 կոպ.։*

Վ. ՊԻԿ—«Լենինիզմը ժողովուրդների հաղթական դրոշն է սոցիալիզմի համար մղվող պայքարում», *Հայպետհրատ, 70 էջ, գինը 55 կոպ.։*

«ՀԿՊ XXI համագումարի բանաձևը», *Հայպետհրատ, 36 էջ, գինը 35 կոպ.։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ—«ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունը XXI համագումարին», *Հայպետհրատ, 115 էջ, գինը 1 ռ. 25 կոպ.։*

Վ. Դ. ԳԱՐԲԻՆՅԱՆ—«Սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ձևերի մասին», *Հայպետհրատ, 300 էջ, գինը 4 ռ. 70 կոպ.։*

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ, Հ. ՀԱԿՈԲՅԱՆ—«Դաշնակները իմպերիալիզմի գործակալներն են Մերձավոր Արևելքի երկրներում», *Հայպետհրատ, 58 էջ, գինը 48 կոպ.։*

Վ. Ս. ԹՈՒՄԱՆՅԱՆ—«Հակասությունների բացահայտման ու հաղթահարման դիալեկտիկան», *Պետհամալսարանի հրատարակչ., 235 էջ, գինը 8 ռ.։*

«Մատերիալիստական դիալեկտիկայի կատեգորիաները», *Պետհամալսարանի հրատ., 222 էջ, գինը 6 ռ. 95 կոպ.։*

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ—«Ժամանակակից ամերիկյան բուրժուական ռեակցիոն փիլիսոփայությունը», *Պետհամալսարանի հրատ., 228 էջ, գինը 8 ռ. 55 կոպ.։*